


**Հարգելի՛ ընթերցող,**

Ձեզ եմ ներկայացնում **Լ.Շ. Հովհաննիսյանի «Գրաբարի բառապաշարի իմաստային խմբերի քննություն (III մաս)»** աշխատության (Երևան, 2018) էլեկտրոնային տարբերակը, որը պատրաստել եմ մեծ սիրով՝ հույս ունենալով, որ կկարողանամ օգտակար լինել այս գրքի կարիքն ունեցողին:

**Սոնա Ալավերդյան**

hominemhominemyan@gmail.com

Լ.Շ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# ԳՐԱԲԱՐԻ ԲԱՌԱՊԱՇԱՐԻ ԻՄԱՍՏԱՅԻՆ ԽՄԲԵՐԻ ՔՆՆՈՒԹՅՈՒՆ

## (III մաս)

### ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ-ԳԻՆԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ
ԱԶԳԱՅԻՆ ԱԿԱԴԵՄԻԱ
Հ.ԱՃԱՌՅԱՆԻ ԱՆՎԱՆ ԼԵԶՎԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

Լ. Շ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# ԳՐԱԲԱՐԻ ԲԱՌԱՊԱՇԱՐԻ ԻՄԱՍՏԱՅԻՆ ԽՄԲԵՐԻ ՔՆՆՈՒԹՅՈՒՆ

## (III մաս)

## Խաղողագործություն-գինեգործություն

Ե Ր Ե Վ Ա Ն
ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատարակչություն
2018

ՀՏԴ 811.19
ԳՄԴ 81.2Հ
Հ 854

Տպագրվում է ՀՀ ԳԱԱ Հ. Աճառյանի անվան լեզվի ինստիտուտի գիտական խորհրդի որոշմամբ

Պատասխանատու խմբագիր՝ բանասիրական գիտությունների թեկնածու՝ Գ.Մ.Մխիթարյան

Հովհաննիսյան Լ. Շ.
Հ 854 Գրաբարի բառապաշարի իմաստային խմբերի քննություն/ Լ. Շ. Հովհաննիսյան.- Եր.: ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատարակչություն, 2018.
III մաս: Խաղողագործություն-գինեգործություն. - 67 էջ:

ՀՏԴ 811.19
ԳՄԴ 81.2Հ

ISBN 978-5-8080-1333-9
© ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատարակչություն. 2018
© Հովհաննիսյան Լ.Շ., 2018

# ԱՌԱՋԱԲԱՆ

Հայաստանը վաղնջական շրջանից եղել է վայրի խաղողի, նաև խաղողի ընտանեցման հիմնական տարածք, որը հաստատվում է հնագիտական տվյալներով: Ըստ պեղումների արդյունքների՝ Եղեգիս գետի վերին հոսանքներում հայտնաբերված խաղողի բրածո տերևների դրոշմները 4-5 միլիոն տարվա վաղեմություն ունեն, իսկ Առատաշենի նեոլիթյան բնակավայրից հայտնաբերված գտածոները թվագրվում են մ.թ.ա. 6-րդ հազարամյակի առաջին կեսով: Արարատյան դաշտը եղել է մշակովի խաղողի տեղական տեսակների բուծման հնագույն կենտրոն, որի հաստատումն են Թեյշաբաինի քաղաքի գինու պահեստներից հայտնաբերված խաղողի կորիզները: Վերջիններիս և Արարատյան դաշտի ներկայիս խաղողի ձևաբանական ընդհանրությունները ցույց են տալիս, որ «Արարատյան դաշտի ներկայիս խաղողի տեսակները Ք. Ա. VII դարում Թեյշեբաինիում մշակվող խաղողի ժառանգորդներն են»[1]:

Խաղողագործության հնագույն ակունքները ենթադրում են նաև Հայաստանում գինեգործության վաղնջական շրջանի առկայություն, որը հաստատվում է ինչպես օտարալեզու արձանագրություններում ու գրականության ընձեռած փաստերով, այնպես էլ հնագիտական տվյալներով: «Արենի-1» քարայրում հայտնաբերված նյութերը և դրանց քննության արդյունքները վկայում են Հայաստանում մ.թ.ա. V հազարամյակում գինեգործության զարգացման բարձր մակարդակը:

[1] Ս. Հարությունյան, Ա. Քալանթարյան, Հ. Պետրոսյան, Գ. Սարգսյան, Հ. Մելքոնյան, Ս.Հոբոսյան, Պ. Ավետիսյան, *Գինին հայոց ավանդական մշակույթում,* Ե., 2005, էջ 14-18:

Սույն աշխատանքում մանրամասն քննված են գրաբարում խաղողագործություն և գինեգործություն իմաստային դաշտի անվանումները, այդ բառերի ծագումնաբանությանը վերաբերող հարցերը, բառային միավորների բառակազմական, գործառական առանձնահատկությունները:

Գրաբարյան շրջանի վկայություններից զատ անդրադարձել ենք տարբեր բարբառներում ու միջին հայերենում գործածական որոշ բառերի, որոնք հնդեվրոպական ծագումով բնիկ հայերեն բառեր են կամ հին փոխառություններ:

Իմաստային խմբերի մանրազնին քննությունը կարևորվում է նախ և առաջ տվյալ լեզվի բառապաշարը համապարփակ ներկայացնելու առումով: Հայոց լեզվի պատմությանը վերաբերող աշխատություններում նույնպես կան իմաստային խմբերի դասակարգումներ: Հ. Աճառյանը հայերենի հնդեվրոպական բառապաշարը ներկայացնում է ըստ 22 իմաստային խմբերի (ՀԼՊ, I, 108-112), Գ. Ջահուկյանը՝ 23 (ՀԼՊ, 258-274): Հեղինակները նշում են հիմնականում բառերի հ.-ե. ձևերը՝ չանդրադառնալով գործառական առանձնահատկություններին, վկայության ժամանակաշրջանին և այլ մանրամասների: Նկատելի է նաև, որ ներառված են ոչ բոլոր բառերը:

Դույզն-ինչ չենք թերագնահատում երկու մեծագույն հայագետների վաստակը, քանի որ դասակարգումներում ընդգրկված նյութի տարաբնույթ քննությունը նրանց հիմնաբար աշխատանքի նպատակադրումը չէր:

Դասակարգումները կատարելիս օգտվել ենք ոչ միայն բառարաններից, այլև գրաբար մատենագրության ընձեռած նյութից, որը հնարավորություն է տալիս բացահայտելու մի շարք նոր իրողություններ: Օրինակ՝ պարզվում է, որ 5-րդ դ. հայ ինքնուրույն գրականության մեջ *խաղող* բառը վկայված չէ. բառը վկայված է միայն թարգմանական գրականության մեջ, հատկապես Աստվածաշնչում: *Խաղող* բառի ոչ հաճախական կիրառության պատճառն այն է, որ *խաղող* հասկացությունը գրաբարում արտահայտվում է *որթ, գինի,* նաև *այգի* բառերով: Աշխատանքում բերվում են համապատասխան օրինակներ:

Մատենագրության տվյալների ուշադիր քննությունը բացահայտում է բառերի հաճախականության, հոմանիշության, բազմիմաստության նրբերանգներ, որոնք գրաբարի բառարաններում արտացոլված չեն: Օրինակ՝ բառարաններում *այգի, գինի* բառերի «խաղող» իմաստը արձանագրված չէ:

Հավելենք, որ լեզվաբանական այս և այլ կարգի իրողություններ կան ոչ միայն *խաղողագործության-գինեգործության* բնագավառին վերաբերող բառաշերտում, այլև իմաստային այլ խմբերում:

«Գրաբարի բառապաշարի իմաստային խմբերի քննություն» երկու աշխատություններում (I մաս, Ե. 2008, II մաս, Ե., 2012) քննել ենք 10 իմաստային խումբ՝ 30 ենթախմբերով:

Սույն աշխատանքը այդ բնագավառին վերաբերող երրորդ մենագրությունն է: Առաջին գլխում անդրադարձել ենք *խաղող,* երկրորդ գլխում՝ *գինի* իմաստային խմբի բառապաշարին: Կատարված են մի շարք դասակարգումներ: Բնականաբար, առարկություններ կարող են լինել այս կամ այն միավորը տվյալ և ոչ թե հարակից խմբում ներառելու, դասակարգումների անվանումների, ընդգրկված նյութի ծավալի վերաբերյալ:

Միշտ չէ, որ հնարավոր է կատարյալ, անթերի դասակարգումներ՝ պայմանավորված բառերի մերձիմաստային կապերով, համանունության, բազմիմաստության, իմաստային նրբերանգների, գործառական յուրահատկությունների,

վկայության տարբեր ժամանակաշրջանների և այլ գործոններով:

Աշխատանքում, ըստ հնարավորինս, օգտագործել ենք մատենագրության և բառարանագրության ընձեռած նյութը, անհրաժեշտության դեպքում նշվել են այլ լեզուների համապատասխան զուգահեռները: Անդրադարձել ենք քննության առարկա բնագավառին վերաբերող ուսումնասիրողների դիտարկումներին:

Որպես առաջաբանի ամփոփում՝ նորից շեշտենք, որ չթերագնահատելով բառարանային տվյալները, իմաստային խմբերի քննության ժամանակ էական և կարևոր պետք է համարել բնագրային վկայությունները:



# ԳԼՈՒԽ I
# ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

Բանասեր Կ. Գաբիկյանը խաղողը համարում է «Նոյի օրերէն սկսեալ մեր երկրի ամենապատուական բերք և տունկ, որքան իր պտուղովը, նոյնքան և իր գինիովը հռչակաւոր» (Գաբիկեան, 79):

Խաղողի, խաղողագործական մշակույթի վաղնջական ակունքների փաստը տրամաբանորեն ենթադրում է այդ բնագավառին առնչվող մի շարք հին անվանումների (կարելի է ասել տերմինների) գոյություն, որը և հաստատվում է մատենագրության տվյալներով, այդ կարգի բառերի ստուգաբանություններով:

Գրաբար մատենագրության մեջ ավանդված բառերից զատ կանդրադառնանք նաև բարբառներում գործածական մի շարք բառերի, որոնք կարելի է ներառել հայերենի հնագույն բառաշերտի մեջ:

*Խաղող* բառի ծագման վերաբերյալ կան մի շարք կարծիքներ:

ՀԱԲ-ում բառը ստուգաբանված չէ: Բառարանում բերված ստուգաբանական փորձերից թերևս որոշակի հետաքրքրություն է ներկայացնում Լազարդի կարծիքը, ըստ որի՝ հայերեն *խաղող*-ը առնչվում է ղպտերեն aloli-ի հետ: (Տե՛ս ՀԱԲ, II, 322): Գ. Ղափանցյանը նշում է նաև հին եգիպտերեն arēr,uarer «որթ» զուգահեռը: (Ղափանցյան, 2008, 17): Ըստ Գ. Ջահուկյանի՝ *խաղող* «որթ և պտուղ» փոխառություն՝ թերևս խուռերեն haluli «մի պտուղ» (ՋՀԱԲ, 313):

*Խաղող* բառի ծագման վերաբերյալ ավելի համոզիչ կարելի համարել Վ. Գայսերյանի ստուգաբանությունը: Անդրադառնալով Վանի թագավորության արձանագրություններից մեկում ha-lu-li-ni վկայությանը, մերժելով Գ. Մելիքի-

շվիլու «թող կատարվեն», ապա և Ի. Դյակոնովի «հացկե-րույթ» (ծիսական) թարգմանությունը՝ գրում է. «ḫaluli բառը, անկասկած որևէ կապ չունի առաջարկված թարգմանու-թյունների հետ, այլ հայերեն «խաղող» բառի սեպագիր վկայված ձևն է՝ լ>ղ սովորական անցմամբ...: «Խաղող բառը մեր կարծիքով բարդ կազմություն ունի և բաղկացած է ḫal և uli արմատներից, որոնցից առաջինը հայերեն խաղ «խաղալ, շարժվել, գնալ, վազել, արշավել» բառն է, իսկ երկրորդ բա-ղադրիչը՝ uli «լինել, անել, տալ» բառը... Այսինքն՝ *խաղող* նախապես նշանակել է խաղ-/աց/ող, շարժվող, գնացող, սո-ղալով աճող, որն անտարակույս խաղողի վազի բնորոշ հատկանիշն է» (ՊԲՀ, 2014, № 2, 163):

Նկատենք, որ *խաղ*-ի համար Գ. Ջահուկյանը ենթադ-րում է հ.-ե. ծագում *khl- (կամ *khəl-) *kel- «քշել, արագ շարժվել» (ՋՀՍԲ, 311): Վերոհիշյալ փաստարկները կարելի է հիմնավոր համարել, որովհետև Հայաստանում վաղնջական շրջանից տարածում գտած պտուղը (միրգը) տրամաբանորեն պետք է ունենար բնիկ հ.-ե. ծագում՝ հայերեն անվանում:

## 1. Խաղող բառի գործառական առանձնահատկությունները

Գրաբարում բառը հաճախական գործածություն չու-ներ: Բառը չեն գործածել Կորյունը, Եզնիկը, Բուզանդը, Եղի-շեն, Խորենացին:

Ագաթանգեղոսը և Փարպեցին վկայել են մեկ անգամ:

Ագաթանգեղոսի նախադասությունը հեղինակային չէ, այն քաղված է Աստվածաշնչից. հմմտ. «Զի յորթոյ Սոդոմայ է որթ նոցա... խաղող նոցա լեղի և ողկոյզ նոցա դառնութիւն» (Բ. օրէնք, ԼԲ, 32): «...Արբ Սոդոմ զգինին անօրէնութեան... Զի



խաղող նոցա՝ էր խաղող դառնիճ, և ողկոյզ նորա ի դառնու-թիւն լեղւոյ...» (Ագաթ., § 538):

Փարպեցու գրքի օրինակը նույնպես աստվածաշնչյան համատեքստում է՝ «Սուրբ Սահակ Պարթևի տեսիլը» բաժ-նում. «Եւ ի վերայ սեղանոյն կայր հաց մի սուրբ և ողկոյզ մի խաղողոյ, ըստ պատուականութեան խորհրդոյ երկնաւոր փրկութեան» (Փարպ., 1982, 68)

Փարպեցին *տեսիլ*-ի նկարագրությունը սկսում է այս-պես. «Տեսիլ սրբոյն Սահակայ Պարթևի, զոր ետես ի Վաղար-շապատ քաղաքի... Արդ՝ գրեսցուք տեսիլն, որ են՝ բանք Հօր եւ Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ և Հոգւոյն սրբոյ» (Փարպ., 1982, 66):

Հետհինգերորդդարյան հեղինակներից *խաղող* բառը չեն վկայել Սեբէոսը, Ղևոնդը, Դրասխանակերտցին, Ասո-ղիկը...:

Բառի առաջին վկայությունը Աստվածաշնչից է. կի-րառված է 25 անգամ*:

Հունարեն Աստվածաշնչում բառը վկայված է 34 ան-գամ՝ 31-ը Հին կտակարանում, 3-ը՝ Նոր կտակարանում**:

Ռուսերեն համաբարբառում արձանագրված է 42 կի-րառություն:

Բերենք մի քանի զուգահեռներ, որոնցում հայերեն *խաղող* բառը չկա:

«Կթեցին զայգիս իւրեանց» (Դատ., Թ, 27), ռուս. «собирали виноград»: «Եւ զամենայն պտուղ իւղոյ և զամենայն պտուղ գինւոյ և ցորենոյ, զոր տացեն Տեառն զպտուղ իւրեանց, քեզ ետու զայն» (Թիւք, ԺԸ, 12), ռուս. «Все лучшее из елея, и все лучшее из винограда и хлеба, начатки их, которые

* Այս տվյալները համապատասխան համաբարբառներից են:
** Այս տեղեկությունը մեզ հաղորդել է հունագետ, բ.գ.դ. Գոհար Մու-րադյանը, որին հայտնում ենք մեր խորին շնորհակալությունը:

дают Господу, я отдал тебе»: Աստվածաշնչային այս անհամապատասխանությունները վրիպումներ չեն կամ ոչ ճիշտ թարգմանություններ: Գրաբարում, թերևս նախագրային շրջանից մի շարք բառեր ունեցել են խաղող իմաստը. օրինակ՝ *որթ* բառի «խաղող» իմաստը ՆՀԲ և ԱԲ չեն նշում, իսկ ՀԱԲ-ը Գ. Մագիստրոսի «Ճաշէին յորթ, ի հաց և ի կոգի» նախադասության մեջ իրավացիորեն արձանագրում է «խաղող» իմաստը:

Սակավաթիվ են նաև *խաղող* բաղադրիչով կազմությունները: ՀԱԲ-ում նշված են հետևյալ բառերը *խաղողաբեր, խաղողաղառն, խաղողենի, խաղողեփեաց* «մի տեսակ միջատ», *խաղողիկ, շնխաղող.* «մի տեսակ վայրի պտուղ»: Ն. Բյուզանդացին մերժում է *խաղողիկ* «մանր խաղող» իմաստը. «Խաղողիկ ոչ է գաղիերեն Blut ծաղիկն և ոչ մանր խաղող, այլ՝ *զանգիկ, լեզուակ*» (Բիւզ. Քննդ., 18):

V դարից են վկայված *խաղողաբեր* (վկայություն կա և X դարից), *խաղողաղառն, խաղողեփեաց:* Մյուս բառերը ուշ շրջանի կամ միջինհայերենյան վկայություններ են*:

Նպատակահարմար ենք համարում այս շարքում անդրադառնալ և *չամիչ* «չորացած խաղող» բառին: (ՀԱԲ): ՆՀԲ-ի բացատրությունը ավելի մանրամասն է. «Խաղող չորացուցեալ յարևու կամ ի փռան. որպէս և ի բնէ կծկեալն

*Միջին հայերենի բառարանում *խաղող* արձանագրված չէ: Կա *խաղողենի*[1] «խաղող, որթատունկ», *խաղողենի*[2] «ծիածանաթաղանթ, ծիածան աչքի»: (304):
*Խաղող* գործածական է համարյա բոլոր բարբառներում, մի շարք բարբառներում բառասկզբի *խ*-ի փոխարեն *հ* է: Աճառյանի կարծիքով «շատ հետաքրքրական է Ղարաբաղի բարբառի *խըղվին* սեռականի հոլովաձևը» (ՀԱԲ): Հիշյալ բարբառի բառարանում որպես գլխաբառ նշված են *խաղու(ղ)* |խաղօղ|հաղուղ|հաղօղ|:
*Հավող:* Կա և *խաղուն ծիծաղել* «Խաղողը հասունալ, հասունանալուց փայլել» դարձվածը: (ՂԲԲ, 260):



յետ կատարել հասունութեան. յորում մասին երևելի է մանրահատ խաղողն սեաւ և սպիտակ խաղողն անուշահոտ»: (ՆՀԲ, II, 562):

Աստվածաշնչում վկայված է 6 անգամ: Սուրբ գրքում է վկայված նաև *չամչեղէն* բառը. «Սիրէին կտապս *չամչեղէն*» (Ովսէ, Գ, 1), եբր.՝ *խաղողով* (տե՛ս ՆՀԲ, II, 562): ՀԱԲ-ում *չամիչ* բառը ստուգաբանված չէ: Գ. Ջահուկյանը գրում է. «Հայտնի չէ կապը հ.-ե. *kem «սեղմել, քամել» արմատի հետ, որից ծագում են հայ. *քամել* և լիտվ. kĕmuras, լատվ. cemu(o)rs «խաղող» բառերը: (ՋՀԱԲ, 611)*:

Բնականաբար հարց է առաջանում. ինչո՞ւ գրաբարում, հավանաբար և նախագրային շրջանում, *խաղող* բառը հաճախական գործածություն չուներ:

Հիմնական պատճառն այն է, որ *խաղող* հասկացությունը արտահայտվել է մի շարք այլ բառերով:

Գրաբարում *խաղող* իմաստով է գործածվում նաև *գինի* բառը**: Հավանաբար *խաղող* իմաստն է արտահայտել և *այգի* բառը: Այն նախապես ունեցել է միայն «խաղողի այգի»

*«Գիրք Վաստակոց»-ի մի բաժին նվիրված է չամիչ պատրաստելուն. «Ա՛ռ զաղէկ խաղողն, ափռեա մինչև թառամի և ապա հան, կախեա ի շուքն մինչև անդ չորանայ... և աղէկ սեղմեա, որ տափականայ սերտ, և ի վերայ շաքլով ծածկեա, և յանձուխ պաղ տուն կախեա. և այս է լաւն և դիմացկունն» (133):
** Այդ մասին տե՛ս սույն աշխատության II գլխում:
*Գինի* բաղադրիչով մի շարք բառեր առնչվում են «խաղող» հասկացությանը: *Գինակ* «խաղողի մի տեսակ», *գինուկ* «գինու խաղող», *գինետու որթ:* Այս բառերը ՆՀԲ-ում չկան: Օգտվել ենք Ստ. Մալխասյանի բառարանից: Այդ բառերին անդրադարձել է նաև պատմաբան Ս. Պետրոսյանը (տե՛ս ՊԲՀ, 199, № 2-3, 175): Իհարկե, եթե սրանք հին բնագրային վկայություններ ունենային, ավելի կարևոր փաստեր կլինեին, սակայն անվերապահորեն մերժելի չպետք է համարել դրանց գործածության վաղ ակունքները:

իմաստը: ՀԱԲ-ում *այգի*-ն դիտվում է որպես «խաղողային» հասկացություն. 1. «խաղողի այգի», 2. «խաղողի որթ»: «Արդի հայերէնի մէջ,- գրում է Հ. Աճառյանը,- արևմտեան գրականում *այգի* պահել է իր բուն նշանակութիւնը, իսկ արեւելեան գրականում նշանակում է ընդհանրապէս պարտէզ» (ՀԱԲ, I,166):

Այլ տեսակի այգիները գրաբարում արտահայտվում են *բուրաստան, դրախտ, պարտէզ* բառերով:

Հ. Աճառյանը *այգի* բառի արմատը համարում է *այգ «խաղող», իսկ *ի*-ն ծառանուններին բնորոշ ածանց է: (ՀԱԲ, I, 166):

13-րդ դարից վկայված հետևյալ նախադասության մեջ *այգի*-ն հաստատապես նշանակում է «խաղող»: «Ի միում տեղոջէ ջամբէ բնութիւնն այգոյ քաղցրութիւն և լուծութիւն» (Իշօխ, 89): Բնագրի ռուսերեն թարգմանությունը՝ «Природа из общего источника дает винограду сладость» (ն.տ.):

Ստ. Մալխասյանի բառարանում վկայված *այգեռուպ* «խաղողի հյութից պատրաստված դոշաբ, ռուպ» բառի *այգ(ի)* բաղադրիչը դարձյալ «խաղող» իմաստն ունի:

Կարելի է ենթադրել, որ թերևս նախագրաբարյան շրջանից *այգ(ի), որթ, գին(ի), խաղող* բառերը հոմանշային եզրեր ունեին, բացառելի չէ որ դրանք կարող էին լինել տարածքային տարբերակներ:

## 2. Խաղողի վազի անվանումներ

Հայերենում ծառատեսակների անվանումները հիմնականում կազմվում են *մրգի (պտղի)* անուն է + *-ենի* կամ *-ի* ածանցով:

Գրաբարում *խաղողենի* վկայված չէ: ՆՀԲ-ի միակ վկայությունը միջինհայերենյան շրջանից է. «Տայ զհովութիւն



քափուրի, որ ի հնդիկս ի մէջ խաղողենւոյ հանեն»: Այս նույն և միակ օրինակն է և «Միջին հայերենի բառարանում»: ՆՀԲ նշում է «որթ կամ այգի, յորում լինի խաղող» իմաստը, իսկ միջին հայերենի բառարանը՝ «խաղող, որթատունկ»: *Խաղողենի* չկա և բարբառներում (համենայնդեպս արձանագրված չէ «Հայոց լեզվի բարբառային բառարանում»:

Գրաբարում հաճախական է *որթ* «խաղողի վազ»-ը:

*Որթ* «տունկ խաղողոյ աճիւնաճիւղ» (ՆՀԲ, I, 694): ՀԱԲ-ը նույնպես նշում է այս իմաստը, նկատում, որ Գ. Մագիստրոսից քաղված «ճաշէին յորթ, ի հաց և ի կոգի» նախադասության մեջ *որթ*-ը նաև նշանակում է «խաղող»:

*Որթ* (վազ) իմաստով է գործածվում և *այգի* բառը, որն առկա է գրաբարյան մի վկայության մեջ. «Որպէս զայգի երկմատնի կամ երեքմատնի» (ՆՀԲ): Բառարանագիրները «որպէս *զայգի»*-ից հետո փակագծերում նշում են (իմա՛ որթ): Նկատենք, որ *մատն*՝ որպես խաղողային հասկացություն, ՆՀԲ-ն չի արձանագրում:

Հունարենում նույնպես ἄμπελος-ը ունի «խաղողի վազ» և «խաղող» իմաստները (Дворецкий, I, 99): *Որթ* բաղադրիչով են կազմված *որթատունկ, որթափայտ* բառերը:

Բառի հ.-ե. ծագումը կասկած չի հարուցում (տե՛ս ՀԱԲ, ՋՀՍԲ):

*Վազ* «խաղողի որթ» վկայված է Վ. Այգեկցու առակներից մեկում. «Եւ կտրեց զխաղողին վազն և կուժն լցեց գինով» (ՄՀԲ, 724): Բառի մեջ *վազել* բայի հիմքն է, ինչպես *ոստ, ոստիւն* (ՀԱԲ, ՋՀՍԲ), իսկ վազ «ցատկ, վազք». «Թերևս հին իրանական փոխառություն է՝ vaz (հ.-ե. *veǵh)» (ՋՀՍԲ, 701): *Վազ* «խաղողի որթ»-ը կարելի է համարել հայերենում ստեղծված բառ՝ հ.-ե. *veǵh-ի անմիջական կապով:

*Տոլի* «խաղողի որթ» (ՀԱԲ, IV, 416): Բառը չունի ՆՀԲ-ն: Թեև վկայությունները միջինհայերենյան շրջանից են, սա-

կայն ուսումնասիրողները նշում են բառի կապը հին լեզուների հետ: Գ. Ղափանցյանը որպես զուգահեռ նշում է ուտիերեն tul «խաղող», ինչպես նաև ուրարտերեն uduli «գինի», uldi «որթ» (Ղափանցյան, 2008, 50): Գ. Ջահուկյանը հնարավոր է համարում այդ առնչությունը (1987, 432), իսկ մեկ այլ տեղ գրում է. «Հազիվ թե կապ ունենա ուրարտ. uduli (uldi) «խաղողի այգի» բառի հետ» (ՋՀՍԲ, 731): Ավելի վաղ հրատարակված այլ աշխատության մեջ հեղինակը նշում է *տոլի*-ի բնիկ հայերեն լինելը՝ հ.-ե. dhel-duol «ծաղկել, կանաչել» հին վ. գերմաներենի tela «խաղող, ողկույզ, վազ» (Джаукян,1967, стр. 19): Ավելի համոզիչ է այս կապը. մանավանդ որ Գ. Ջահուկյանը *գինի, որթ, այգի, արգաւտ* հնդեվրոպական ծագման փաստարկով եզրակացնում է. «Սրանք խոսում են խաղողագործության՝ վաղնջահայերին ծանոթ լինելու մասին» (Ջահուկյան, 1987, 263):

## 3. Խաղողի որթի (վազի) մասերի անվանումներ

Այս ենթախմբի անվանումները բազմաթիվ են:

***Աղուրի/Աղուրայ*** «որթի տաշտաթաղ անելու ճիւղը» (ՀԱԲ, I, 135): ՆՀԲ-ում վկայությունները թարգմանական գրականությունից են: Բառը ստուգաբանված չէ:

Բառի վերաբերյալ ուշագրավ դիտարկում ունի Ս. Պետրոսյանը. «*Աղուրի*-ն արմատակիցն է *աղօշ//աղոշ* «խաղողի որթի նորածիլ ուղեշ» բառի: Սրանց արմատը ծագում է հ.-ե. *al «աճել, աճեցնել, սնել» նախաձևից: Աղուրի բառում արմատին հավելվել են *–ուր* (հմմտ. բլուր, հանուր...) և *-ի* վերջածանցները: Վերջինս նաև բուսանվանական վերջածանց է» (ՊԲՀ, 2010, № 3, 224): Հեղինակի կարծիքով բառն ունի նաև տեղանվանական կիրառություն, որը հայտնի է



սեպագիր տեքստերից: «Մ.թ.ա. 713 թ. Ուրարտու ներխուժած Ասորեստանի Սարգոն 2-րդ թագավորը Վանա լճի ավազանում հիշատակում է Alluria անունով գետ, իսկ ավելի հարավ... Alluria անունով լեռ» (ն.տ.): Հեղինակը ենթադրում է, որ հիշյալ գետը Վանա լճին հարող խաղողաշատ և գինեվետ գավառներից որևէ մեկում է եղել:

***Արգաւտ*** «որթատունկի էտած ճյուղերը»: Հայկազյան բառարանները այդ բառը չունեն: ՀԱԲ-ում ստուգաբանված չէ:

Ըստ Է. Աղայանի՝ բառը ծագում է հ.-ե. u̯(e)rad- արմատի u̯rəd տարբերակից՝ *գրաւտ>րգաւտ>արգաւտ* հաջորդական փոփոխություններով: Հ.-ե. արմատի իմաստն է «ճյուղ, արմատ, ոստ...» (Աղայան, 1974, 30): Գ. Ջահուկյանը ընդունում է այդ ստուգաբանությունը (ՋՀՍԲ, 87):

Ս. Պետրոսյանը Ազուլիս (նախնական անվանումը՝ Արգուլիք) տեղանվան և Արգիշտի անվան մեջ տեսնում է *արգաւտի*՝ *արգ* արմատը (ՇՀՀԿԳԱ, 2003, VI, 11):

***Բազուկ*** - Գրաբարում բառը բազմիմաստ է: Նշանակում է նաև «ճյուղ»: Վկայված է Աստվածաշնչում. «... եւ ահա ձգտեն զբազուկ որթոյն ընդ արհամարհանս» (Եզեկ., Ը, 17): Աշխարհաբար թարգմանությունը. «... Ահա որթատունկի ճիւղն էլ *քաշում են որպէս արհամարհանքի նշան»*[*]:

*Բազուկ* «ձեռք, ձեռքի մաս» իրանական լեզուներից կատարված փոխառություն է: Հայերենում բառի «ճակնդեղ» և «ճյուղ» իմաստները չպետք է փոխառություն համարել:

***Բարունակ*** «երկայնատարած ուռն որթոյ» (ՆՀԲ): Առաջին վկայությունը Աստվածաշնչից է. «... վասն այնորիկ մի՛ ծաղկեսցեն բարունակք նորա» (Յոբ, Ւ, 21): Ըստ Հ. Աճառ-

[*] Ծանոթագրվում է, որ եբրայերեն բնագրում ընդգրկված հատվածը «քաշում են իրենց քթին» է: Ռուսերեն թարգմանության մեջ էլ այդպես է. «... они ветви подносят к носам своим»:

յանի «խաղողի պտղաբեր ոստ» (ՀԱԲ, I, 429): Մեծավաստակ գիտնականը, սակայն, առարկելի է համարում դասական գրաբարում *բար(բեր)* «պտուղ»+ունակ կազմությունը, «որը յետիններին է հատուկ» (ն.տ.)*:

***Գաւազան*** - Մի շարք իմաստներից զատ բառարանները արձանագրում են նաև «ծառի ճյուղ, ոստ» իմաստը: ՀԱԲ-ում նոր բառերի շարքում նշվում է Ղարաբաղի բարբառի *գաւազան* «որթատունկի մատ կամ վազ, որ նոր են տնկում» (I, 526): Բարբառային ձևը ոչ թե գավազան է, այլ՝ *կըվազան*: Բարբառում գրաբարյան ձայնեղ բաղաձայնները խլանում են: Ձայնեղների խլացման գործընթացը կատարվել է մինչև XII-XIII դարերը: Հետևաբար ենթադրելի է բառի գործածության հին ակունքները նաև հայերենում: Հավելենք, որ բարբառում *կըվազան* բաղադրիչով կա նաև մեկ այլ բառ՝ *կըվըզընափոս* «որթատունկի մատը կամ մատղաշ վազը տնկելու փոս» (ՂԲԲ, 378)**:

***Գնդակ որթոյ*** «Բարունակ ոստ» (ՆՀԲ): «Կապեսցէ զորթոյ զյաւանակ իւր և զգնդակէն՝ զյաւանակ իշոյն» (Ծննդ., ԽԹ, 11): Ս. Գրքի այս հատվածը բերում է և Ագաթանգեղոսը. «Կապեսցէ զգրաստ իւր զորթոյ և զյաւանակ իշոյն զորթոյն գնդակէ» (Ագաթ., § 376): Աշխարհաբար թարգմանված են. «Իր

---

*Գ.Ջահուկյանը կասկածելի է համարում Հ. Աճառյանի դիտարկումը (ՋՀՍԲ, 122):

** Բարբառային *թննագ* «խաղողի որթ, վազ»-ը արդյոք կապ ունի՞ *թին* «խաղողի կորիզ»-ի հետ: Ս. Մալխասյանի բառարանում որպես զուգահեռ նշվում է պրսկ. tane «ծառի բուն»-ը: Հավանական է և միջին պարսկերենում tak «վազ, որթ»-ի հետ աղերսը: *Թննագ* գործածվում է միայն Ղարաբաղի և Հավարիկի բարբառներում (ՀԼԲԲ, Բ, 76): Երկուսն էլ արևելյան խմբակցության բարբառներ են, որը ավելի հավանական է դարձնում իրանական լեզուներից փոխառյալ լինելը:



աւանակին կը կապի որթից, իսկ որթի ոստից էլ քուռակին» (Ծննդ.): «Իր գրաստը որթատունկին է կապելու և իր իշու ձագը որթատունկի ծունկին» (Ագաթ., § 376):

*Գնդակ որթոյ*-ն, ըստ երևույթին, որթի կլոր, ծնկաձև մասն է:

*Գնդակ*-ի և *գաւազան*-ի նշված իմաստները միջին իրանական լեզուներում վկայված չեն:

***Խաւարածի*** «որթի փափուկ, կակուղ և մատղաշ ծիլ» (ՀԱԲ, II, 351):

Վկայություններ կան V դարի թարգմանական գրականությունից. ահա բնագրային մեկ օրինակ. «... զի ի մի անուն այգւոյ բազում իրք անուանաշատք յաւրինեալք պէսպէս կերպարանօք կանգնեցան՝ կացին՝ արմատք և ուռք, կողր և տերեւ խաւարծի և ծաղիկ և բաժակ, ողկոյզ, գնդակ, պատաղիճ» (Բրսղ. վեց. 436): Գ. Ջահուկյանը *խաւարծի*-ի, արմատը համարում է *խաւ* «շերտ, խավ» բնիկ հ.-ե. *khəu- *(s)keu- «ծածկել, փաթաթել» արմատից (ՋՀՍԲ, 323):

***Կոյզկապ*** «կոթ խաղողոյ, որով յողկոյզն կախի»: «Խլեայ ի կոյզկապէն, այնպէս որ չպտղի պտուղն» (Վստկ., 83): Առաջին բաղադրիչը *ողկոյզի*-ի համառոտված ձևն է:

***Մայրան*** - «միջին կամ հաստ բուն ծառոյ և որթոյ, իբր թէ մայր տնկոյն»: Այսպես է ծանոթագրում «Գիրք Վաստակոց»-ի հրատարակիչը (էջ 252): ՆՀԲ-ի մեկնությունը մի քիչ այլ է: Բառի հ.-ե. բնույթը կասկած չի հարուցում:

***Մատն*** «խաղողի որթի ճյուղերը» (ՀԱԲ): Գրաբարում հաճախական չէր: Բնիկ հայերեն բառ է:

***Յօտ*** «յօտեալ ուռ՝ այսինքն ճիւղ որթոյ» (ՆՀԲ): Բառարանի վկայությունը V դարից է:

***Տաշտ*** «խաղողի որթի տնկուած ճիւղ» (ՀԱԲ): *Տաշտ*-ը ունի «կոնք, բաժակ, խնկաման» իմաստները, այսինքն՝ տարբեր ամանեղենների անվանում է:

*Տաշտ* «խաղողի տնկած ճիւղ»-ի ծագումը անհայտ է (ՋՀԱԲ, 720): Թերևս ընդունելի է ՆՀԲ-ի բացատրությունը. «Որպէս բուն որթոյ տնկեալ ի կոնքաձև փոս (որոյ բացումն ասի բաժակել): Բառարանը բերում է Բուզանդի գրքից հետևյալ օրինակը. «Պատառէին բազում ունջս որթոյ, արմատաքի խլէին և զտաշտն գլխովին»:

*Տաշտ*-ով կազմություններից են՝ *տաշտաւոր, տաշտագէղ, տաշտաթաղ, տաշտախիլ...*:

V դարից են հետևյալ վկայությունները: «Պատառէին բազում ունջս որթոյ... արմատաքի խլէին և զտաշտն գլխովին և զբազուկ ընջովին» (Բուզ., 82): «Զօրացան ազազեցան բուրաստանք նոցա, և տաշտախիլ եղեն որթք գինեբեր այգեաց նոցա» (Եղիշէ, 201):

***Տորր*** «շառաւիղ բուսոյ և տնկոյ».մանաւանդ «բազուկ որթոյ խաղողոյ» (ՆՀԲ): Գրաբարում հաճախական չէր: Գ. Ջահուկյանը ենթադրում է որպես *տարր* բառի ձայնդարձային տարբերակ՝ հ.-ե. *der- «քերթել, ճեղքել» արմատից (ՋՀԱԲ, 734):

***Ուռ*** «Բարունակ որթոյ, ընձիւղ, ոստ որևէ տնկոյ» (ՆՀԲ): ՀԱԲ-ում «որթի ճյուղ» իմաստը չի նշվում: Իրավացիորեն ՆՀԲ բառիմաստների շարքում դնում է «բարունակ որթոյ»-ն: Աստվածաշնչի մի քանի վկայություններում էլ ուռ-ը «խաղողային» հասկացություն է: «...հատին անտի ուռ որթոյ, և ողկոյզ մի խաղողոյ ի նմա» (Թիւք ԺԳ, 24): Աշխարհաբար թարգմանությունը՝ «կտրեցին խաղողի ողկույզ ունեցող որթատնկի մի ճիւղ», ռուս. «...срезали там виноградную ветвь с одною кистью ягод»: «Ես եմ որթ և դուք ուռ» (Յովհ., ԺԵ, 5): Աշխարհաբար թարգմանությունը. «Ես եմ



որթատունկը, իսկ դուք՝ ճիւղերը», ռուս.՝ «Я есмъ лоза, а вы-ветвы»*:

Ճիշտ է բառի՝ ՆՀԲ-ի բացատրությունը. «խիղբ որթոյ՝ որ պատի զխեչակով»:

Բառերի մի խումբ էլ վերաբերում է *ողկույզ* հասկացությանը:

*Ողկոյզ* բաղադրիչով են կազմված՝ *ողկուզաբեր, ողկուզաբոյծ, ողկուզազարդ, ողկուզալի, ողկուզական, ողկուզաւորթ, ողկուզակ, ողկուզօրէն* բառերը (ՆՀԲ, II, 507): Գ. Ջահուկյանը համարում է հին կազմություն *ող* և *կուզ* տարրերից, որոնցից *կուզ*-ը համընկնում է *ընկոյզ* բառի *կոյզ*-ի հետ և պահպանվել է առանձին՝ *կուզ* «ճութ» բառի մեջ: *Ող*-բաղադրիչի համար Գ. Ջահուկյանը ենթադրում է հ.-ե. Ծագում: (ՋՀԱԲ, 600-601):

*Ճիռ* «խաղողի սակաւահատ փոքրիկ ողկոյզ» (ՀԱԲ, III, 201): Բառի ծագումը անհայտ է: *Ճիռ* բաղադրիչով կազմություններից են *ճռախիտ, ճռաքաղ, ճռաքաղել, ճռաքաղություն:* Վկայությունների մեծ մասը V դարից են**:

*Շրուանղ* «հատերը թափված խաղողի ողկույզ»: Գրաբարում հաճախական չէր: Գ. Ղափանցյանը ճիշտ ձևը համարում է *շուանղ* կամ *շուանղ,* որի արմատն է *շիւ* (Ղափանցյան, 2008, էջ 37): Եթե ճիշտ է Ղափանցյանի ուղղումը, ուրեմն

---

* Ղարաբաղում կա *շալ* «խաղողի վազի շիվ». «մին շալ ա կըտըրում էտ կապուկը կապում» (ՂԲԲ, 564): Գ. Ջահուկյանը հնարավոր է համարում բառի հ.-ե. ծագումը (Ջահուկյան, 1970, 314): Նույն արմատի տարբերակն է և *շաղ* «մատղաշ ճյուղ»:

** Ղարաբաղի բարբառում կա քընթէռ(նը), կընթէռ(ն) «հատիկները թափած խաղողի ողկույզ, խաղողի ողկույզի մաս»: Իսկ *ճիթ* «խաղողի ողկույզ»: *Ճիթ* և *քընթէռ(նը)* բառերի հ.-ե. ծագումը կարելի է հավաստի համարել (Տե՛ս Ջահուկյան, 1972, էջ 304, 312):

բառն էլ պետք է համարել բնիկ հայերեն՝ հ.-ե. *skhi-p «կտրել, անջատել» (ԶՀՍԲ, 588-589) արմատից:

## 4. Խաղողի մասերի անվանումներ

Կ. Գաբիկյանը այս ենթախմբի մեջ ներառում է հետևյալ բառերը.

*Կլայ*=խաղողի հատապտուղ մը: Կեղեպ=վերնամաշկը: Միս=միջին մասը (puple): Կուտ=թիւնը: Ջուր=հիւթը (Գաբիկեան, էջ 79):

Այս շարքին հավելենք՝ *կորիզ, շիւ, կեղեւ, թնահատ, փոճոկ, շիւ, չանչ*:

*Թիւն*-ի այլ ձևն է *թին*, որն առկա է *թնահատ* բառում:

***Կլայ*** բառը արձանագրված չէ գրաբարի և միջին հայերենի բառարաններում: Հեղինակը երևի նկատի է ունեցել բարբառային-խոսակցական լեզվի *գöլլա* «խաղողի հատիկ», որը պարսկերենից կատարված փոխառություն է:

Բերենք օրինակներ *թիւն* և *թնահատ* բառերով. «Զամենայն աւուրս ուխտին իւրոյ՝ յամենայնէ զինչ եւ լինիցի որթոյ... մինչեւ զթիւնն մի կերիցէ» (Թիւք, Զ, 4): «Եւ որթն, որ այնչափ գեղեցիկ է ի տեսանել և քաղցր ի ճաշակել, յանպիտան թնահատէ լինի» (Ոսկ. Պօղ, Բ, 446):

Նշենք, որ վերոնշյալ բառերից *թիւն, կեղեւ, կորիզ, կուտ*-ի համար ենթադրվում է հնդեվրոպական ծագում:

***Շիւ***-ը բազմիմաստ է, «ճյուղ» և «խաղողի կուտերն ու մնացորդը»:

***Փոճոկ*** ըստ ՆՀԲ-ի՝ նաև *փեճեկ*: ՆՀԲ-ում որպես խաղողի մաս չի շեշտվում: Ալիշանը հին բժշկարաններից բերում է մի վկայություն, որտեղ *փեճեկ*-ը խաղողի մաս է. «Խաղող լաւ է, զամենայն միրգ, երբ լինի հասուն ու քաղցր և



զանձն լաւ կերակրէ. զկուտն ու զփեճեկն ձգէ. զի անհալ է» (Հայբուսակ, 231):

***Չանչ*** «խաղողի ճզմված կեղևները» (ՀԱԲ, III, 623): ՆՀԲ-ում վկայված չէ: Հ. Աճառյանը Աստվածաշնչի «Զգինի ի չամչոյ մինչև զթինն մի կերիցէ» (Թիւք, Զ, 4) նախադասության *չամչոյ*-ն համարում է ձեռագրական խաթարում: Համապատասխան նախադասությունը համեմատելով հուն. բնագրի հետ՝ իրավացիորեն ենթադրում է *չանչ* բառը: Նշենք որ այդ իմաստն ունի և ռուս. Աստվածաշունչը «... не должен он есть ничего, что делается из винограда, от зерен до коти»: Նկատենք, որ աշխարհաբար թարգմանության մեջ (Էջմիածին 1999) Աճառյանի ուղղումը հաշվի չի առնվել: *Չանչի* փոխարեն *չամիչ* է:

Բառը կովկասյան լեզուներից կատարված փոխառություն է (ՀԱԲ, III, էջ 623,624, ԶՀՍԲ, 611): Ստուգաբանական բառարանները նշում են վրացերենի *չենչո* «կեղև, կճեպ» համապատասխանակը:

## 5. Խաղողատեսակների անվանումներ

Ինչպես նշել ենք, գրաբարում *խաղող* բառը հաճախական գործածություն չուներ, բնականաբար հին մատենագրության մեջ էլ ըստ էության խաղողի տեսակների ու դրանց անվանումներին վերաբերող փաստեր չկան՝ բացառությամբ *ազոխ* «խակ խաղող» բառի: Այն վկայված է V դ. Թարգմանական գրականության մեջ:

Ըստ Աստվածաշնչի համաբարբառի տվյալների կա 4 վկայություն՝ Հին կտակարանից: Հետհինգերորդդարյան ոչ թարգմանական գրականությունից ՆՀԲ բերում է և Գ. Մագիստրոսի «Խակագոյն ազոխիցն անտիոցն» բառակապակցությունը:

Մի քանի տեսակների անվանումներ կան «Գիրք Վաստակոց»-ում. «Եւ ի նոսր գետինքն, ազգ մի սպիտակ խաղող կայ, որում Հոռոմն *Ստինաս* ասէ: Եւ այլ կայ որում փուրփուզնայ ասեն: Եւ այլ որում ճաւարս ասեն... և ի *ջրջրուկ* խաղողն ի նօսր և ի ցամաքային վայրսն տնկէ ոք...» (Վստկ., էջ 47: Ընդգծումները մերն են – Լ.Հ.):

ՆՀԲ-ն նշում է երկու անվանում բժշկարաններից. «*Յակոբուկ* կարմիր միրգ է, ի *շնխաղողին* ցեղեն» (ընդգծումը մերն է – Լ. Հ.): Հետաքրքրական է *Յակոբուկ* բառի բացատրությունը «որպես թէ խաղող խաբող» (ՆՀԲ, II, էջ 315): Բառարանագիրները նկատի են ունեցել *Յակոբ* անձնանվան ստուգաբանական իմաստը: Ղ. Ալիշանը, խաղողի մի քանի տեսակների անվանումների մեջ տեսնում է նրանց «հայանուն» լինելը: Ահա այդ «հայանուն տեսակներէն» մի քանի անվանումներ. *ալեւորիկ, այծապտուկ, եզակն, ժոխոր, լկոի, հայկանվազ, ճուաշ, պարտբաշխուց* կամ *պարտփախուց, տանեղ...* (Հայբուսակ, էջ 230-231):

Արդի խաղողատեսակների անվանումները, բնականաբար, ավելի շատ են. Կ. Մելիք-Շահնազարյանի գրքում կա կովկասյան խաղողների 90 անվանում: Նշում է խաղողի գույնը, հատիկների ձևը, կեղևը (կաշին) և գործածությունը՝ գինի պատրաստելու կամ սեղանի (ուտելու): (Շահնազարյան, 83-87): Բացառելի չէ այդ շարքի մեջ ընդգրկված մի քանի անվանումների ավելի վաղ շրջանում գործածությունը. *Ամբարի, գինակ, լրթենի, լկենի, խունկի, խնդողնը, մորի, սիսակ**...

* Արցախում *խնդօղնէ/խընդօղնը* սև և կլորավուն հատիկներով խաղողատեսակ է, նաև այդ խաղողատեսակից պատրաստված գինու անվանում: *Խինդ* արմատն է նաև *խընդէղնը* «տհաճ հոտ ունեցող թուփ՝ ողկուզաձև, մանր կլոր, սև պտուղներով» (ՂԲԲ, 276): *Խինդ* արմատով այլ բուսանուններ ևս կան: Գրաբարում վկայված է *խնդամոլի/մոլեխինդ*: *Խինդ* արմատի հ.-ե. ծագումը հավաստի է (տե՛ս ՀԱԲ, ՋՀՄԲ): Այդ արմատի տարբերակն է՝ *խանձ*, որից՝ Ղարաբաղի բարբառում *խընձաղա* «ձնծաղիկ»: Թերևս հայ. *խնձոր* բառում էլ նույն արմատն է:



*

* *

Կարելի է առանձնացնել խաղողատեսակների անվանումների բառակազմական հետևյալ կառույցները.

ա) *բուսանուններից կազմված* բառեր՝ խունկի, մորի...

բ) *կենդանանուններից կազմված*՝ զառան դմակ, եզան աչք, իծապտուկ, իշենի, խոզակաշի, կատուենի...

գ) *գունանուններից կազմված*՝ լրթենի, կապուտկենի, կարմրենի...

Ակնհայտորեն շատ են ենի, ի ածանցներով կազմված բառերը: Նշված ածանցները դեռ հնագույն շրջանից ծառատեսակների անվանումների հիմնական բաղադրիչներ են, որոնք առկայանում են նաև մրգանունների մեջ:

Թեև մի շարք բառերի ստուգաբանական, բառակազմական յուրահատկություններ հիմք են տալիս ենթադրելու դրանց հինհայերենյան, գուցե և հնագույն հայերենի շրջանում կիրառության հնարավորությունը, սակայն վաղ շրջանում վերը նշված բառակազմական բոլոր կաղապարների գործուն լինելու կամ չլինելու հարցի մասին մատենագրա-

*Սիսակ* «խաղողի տեսակ»: Գրաբարի բառարաններում վկայված չէ: Ս. Պետրոսյանը ենթադրում է, որ *սիս* արմատը ունեցել է «խաղողի մատ» նախնական իմաստը և որ նույն արմատով կազմված սիսեռը կրել են իրենց դեռևս վայրի տեսակներ պտուղների նմանության՝ դրանց մանր գնդիկաձև լինելու պատճառով (ՊԲՀ, 2010, № 3, էջ 223): Մեկ այլ հոդվածում հեղինակը կռեկ «խաղողի մի տեսակ», որը ՆՀԲ-ում վկայված չէ, առնչում է հ.-ե. *gor|ger «դարձնել, գալարել»-ի հետ (ՊԲՀ, 1999, № 2-3, էջ 176-177):

կան տվյալներ, ըստ էության, չկան: Հարցի պարզաբանմանը կարող են օգնել հին լեզուների ընձեռած փաստերը, եթե դրանք կան:

*

* *

*Խաղող* իմաստային դաշտի մեջ կարելի է ներառել խաղողի տեղավորման, պահպանմանը վերաբերող ներքնիշյալ բառերը. *զամբիւղ, կայթ, կեղթ, կթոց, կողով, որթ**, *ոճ, սապատ, սփիւրիդ, տաշտ, տառաղան*: Բոլոր բառերը վկայված են գրաբար մատենագրության մեջ: Բնիկ հայերեն են *կթոց, ոճ, որթ**, հունարենից կատարված փոխառություններ են՝ *կեղթ, սփիւրիդ, տառաղան*, իրանական լեզուներից՝ *սապատ, տաշտ*՝ ասորերենից՝ *կողով*: ՀԱԲ-ում *ոճ*-ը ստուգաբանված չէ: Գ. Ջահուկյանի ստուգաբանությունը համոզիչ է՝ հ.-ե. *odigo- «ծղոտ, ցողուն» (ՋՀՍԲ, 602): Բառը վկայված է Աստվածաշնչում. «Կթեցէք, կթեցէք, ճռաքաղ արարէք... եւ անդրէն կրկնեսջիք որպէս կթօղ յոճ իւր» (Երեմ., Զ, 9):

---

* Մ. Խորենացին *որթ* տեղանվան հետ է կապում *որթ* «կողով»-ը: Ներսեսը երեխաներին Արշակավանի կոտորածներից փրկելով՝ հրամայում է. «կրել որթովք ի գոմ մի... և դարմանս և սնուցողս նոցին կարգեաց, որք յետոյ աւանացեալ անուանեցան Որթք այնորիկ աղագաւ» (Խոր., III, ԻԷ): Ստ. Մնլխասյանը մի ուշագրավ ծանոթագրություն ունի. «... հունարենում «αγγοσ» բառը, որ ընդհանրապես նշանակում է քթոց, ունի նաև մի հատուկ նշանակություն՝ զամբյուղ, որի մեջ դնում էին ընկեցիկ երեխաներին» (Խոր., 1981, ծան. 280, էջ 516):



# ԳԼՈՒԽ II
# ԳԻՆԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

## 1. Գինի բառի ծագման հարցը. գինի հասկացության այլ անվանումներ

Հայերենը լինելով հ.-ե. լեզուներից մեկը, բնականաբար պետք է ունենար այդ խմիչքի բնիկ հայերեն՝ (իմա՝ հնդեվրոպական) անվանում: Այս, ինչպես նաև գինեգործության հայրենիքի հարցում մասնագիտական գրականության մեջ կան որոշ տարակարծություններ, մանավանդ որ սեմական և կովկասյան որոշ լեզուներում էլ նույն արմատն է:

Հ. Աճառյանը ընդունում է բառի հ.-ե. ծագումը՝ ենթադրելով նախնական *գէնի* ձևը՝ հ.-ե. voinio-ից: Նա, սակայն, անվերապահորեն ընդունում է իր ուսուցչի՝ Ա. Մեյեի տեսակետը՝ գրելով. «... Գինին Միջերկրականի հին քաղաքակիրթ ժողովրդի գիւտն ու սեփականութիւնն է, որ յետոյ՝ մի կողմից՝ փոխառութեամբ անցաւ սեմականներին և միւս կողմից՝ հարևան հնդեվրոպացիներին» (ՀԱԲ, I, 558):

Ականավոր լեզվաբան Վ. Գեորգիևը, հիմք ընդունելով այն, որ հուն. *«գինի»* և «խաղողի վազ» հասկացությունները նույն հ.-ե. արմատից են, գտնում է, որ *գինի*-ն ունի հ.-ե. ծագում, նկատում նաև, որ մերժողները կրում են Ա. Մեյեի այն տեսության ազդեցությունը, ըստ որի՝ նախահունական բնակչությունը եղել է ոչ հնդեվրոպական: Գեորգիևը մերժում է Մեյեի տեսությունը՝ համարելով այն անստույգ, ոչ ճշմարիտ փաստերի վրա հիմնված: Գինի բառի համար Գեորգիևը առաջարկում է նախնական *uei- արմատը՝ նշում նաև, որ հայ. գինին հ.-ե. *u̯oinio-ի ժառանգությունն է հիմք լեզվից, իսկ վրացերեն γwino-ն փոխառություն է հայերենից կամ հ.-ե. որևէ այլ լեզվից և ոչ թե հակառակը: (В. Георгиев, 1958, 265-

266)։ Գ. Ջահուկյանը նույնպես ընդունում է *գինի*-ի h.-ե. ծագումը՝ համամիտ լինելով Գեորգիևի հետ (Ջահուկյան, 1987, 155)։

*Գինի* բառի h.-ե. ծագումը փաստարկվում է նաև Գամկրելիձեի և Վ. Իվանովի հանրահայտ աշխատության մեջ։ Նշվում է, Անդրկովկասում (Հայաստանը չի շեշտվում – Լ.Հ.) մ.թ.ա. V-IV հազարամյակում խաղողագործության մշակույթի գոյության մասին։ (Гамкрелидзе, Иванов, 650-651)։ Հեղինակների կարծիքով՝ *u̯ei-|*u̯i «հյուսել, ոլորել» և այդ արմատի ածանցմամբ h.-ե. *u̯oinio-*uoino- «գինի» կապը հաստատվում է h.-ե. (և ոչ միայն) մի շարք լեզուներում նույն արմատով «խաղող», «խաղողի վազ», «որթ» և «գինի» բառերի գոյությամբ։

Վաղնջահայերենում էլ թերևս *գինի*-ն ունեցել է և *խաղող, խաղողի գինի* իմաստները*։

Գրաբարի բառարանները *գինի* «խաղող» կամ «խաղողի վազ» իմաստը չունեն, սակայն մատենագրության որոշ օրինակներից կարելի է ընդունել, որ այդպիսի գործածություն եղել է։

ա) *Գինի* բառը ՆՀԲ մեկնում է. «Բեր որթոյ կամ այգւոյ. արիւն խաղողոյ. քաղցու...»։ Ուշադրության արժանի է «*Բեր որթոյ կամ այգւոյ*» բացատրությունը, որից տրամաբանորեն ենթադրելի է՝ այգու կամ վազի բերքը գինին չէ, այլ՝ խաղողը։

* Վաղնջահայերենում *գինի* բառի մեջ *–ի* ածանցի առկայությունը ընդունում է Գ. Ջահուկյանը (Ջահուկյան, 1987, 231)։ *Գին* արմատի գոյության մասին ակնարկում է նաև Մ. Խորենացին՝ *Գնունի* հատուկ անվան «ստուգաբանության» շրջանակներում. «... քանզի պատրաստէր զըմպելիսն արքայի յընտիր և ի համեղ գինեաց, ունէր և կոչումն անուան գին» (Բ, 111)։ Խորենացու նշված ստուգաբանության մասին տե՛ս Գ. Սարգսյան, 2006, 93։



բ) V դ. մատենագրության մեջ վկայված հետևյալ օրինակներում *գինի* դարձյալ վերաբերում է *խաղող* հասկացությանը. «Եւ զամենայն արեւելեան եւ զհիւսիսային եւ զհարաւային կողմանս քաղաքին զարդարէ դաստակերտօք, եւ սաղարթիւք ծառոց վարսաւորաց, զանազանեալք ի պտուղս եւ ի տերեւս եւ բազում բազմաբերս եւ գինեբերս ի նմա տնկեաց ովիտ» (Խոր., I, ԺԶ)։

*Գինեբեր* բառը վստահորեն կարելի է փոխարինել *խաղողաբեր* բառով. այդ է հուշում նաև *զանազանեալ ի պտուղս* կապակցությունը։ Այլ օրինակ՝ «Չորացան ազազեցան բուրաստանք. ծաղկոցաց նոցա. եւ տաշտախիլ եղեն որթք գինեբեր այգեաց նոցա» (Եղիշէ, 201)։ Մի խոսքով, ամենայն հավանականությամբ վաղնջահայերենում, ինչպես շատ լեզուներում *գին(ի)* արմատով արտահայտվել են նաև «խաղող», «խաղողի վազ» հասկացությունները։

*Գինի* հասկացությունը գրաբարում արտահայտվում է նաև *արիւն խաղողոյ* բառակապակցությամբ։ ՆՀԲ-ի բոլոր վկայությունները V դարից են, մեկ օրինակ՝ Նարեկացուց։ Բառակապակցությունը հաճախական է Հին կտակարանում. բերենք երկու օրինակ. «Լուացէ գինւով զպատմուճան իւր, և արեամբ խաղողոյ զհանդերձս իւր» (Ծննդ, ԽԹ, 11)։ «Եւ զարիւն խաղողոյ ըմպէին գինի» (Բ. օր, ԼԲ, 14)։ Նկատելի է, որ *արիւն խաղողոյ* բառակապակցությունը հիմնականում հանդես է գալիս *գինի* բառի հետ՝ կարծես թե մեկնելով կապակցության իմաստը։ (Այդ բառակապակցության եբր., հուն. և լատ. համապատասխանակները տե՛ս «Էջմիածին», Ժ, 2016, 131)։

Բերենք ռուսերեն զուգահեռները. «Моет в вине одежду свою и в крови гроздей одеяние свое» (Ծննդ, ԽԹ, 11). «И ты пил вино, кровь виноградных ягод»։

*Արիւն խաղողոյ*-ն վկայել է նաև Եղիշեն: «Մեկնութիւն արարածոց» աշխատության մեջ. «Եւ կէսք՝ զխաղողն եւ զարիւն խաղողոյն, զոր Տէրն կենաց գրաւական ետ ածեն զվկայս» (ՄՀ, Ա հատ., Ե դար, 789):

Նոր կտակարանում գինին այլաբերաբար նաև Քրիստոսի արյունն է. «Եւ առեալ բաժակ գոհացաւ, ետ նոցա և ասէ, Արբէք.... զի այդ է արիւն իմ նորոյ ուխտի» (Մտթ., ԻԶ, 27): Կրոնական խորհրդանիշի արտահայտություն է *Աստուածըմպելի* «գինի» բառը. «Սփռեալ եհեղ ի վայելչութիւն օգտակարագոյն՝ աստուածըմպելոյն» (ՆՀԲ, I, 332):

Դեռ վաղնջական շրջանից գինին առնչվել է նաև ծիսական արարողությունների հետ: Պատահական չէ, որ գինու արտադրությունը հիմնականում կատարվել է տաճարներում: Հայաստանում խոշոր հնձաններ հայտնաբերվել են եկեղեցիներում ու վանական համալիրներում: Իսկ եկեղեցիների պատերին խաղողի, գինու քանդակները քրիստոնեական ուսմունքի հետ կապված նոր խորհրդանիշներ են (Հարությունյան, Քալանթարյան, ... 32)*:

---

* Նախաքրիստոնեական շրջանում, որոշ ժողովուրդների մոտ հատուկ պատրաստված ու պահպանված գինի խմելը պատերազմում հաղթելու, թշնամուն սպանելու խորհրդանիշ էր: Օրինակ՝ Սկյութներից այդ գինուց իրավունք ունեին խմել միայն նրանք, որոնք թշնամու զինվոր էին սպանել: Իսկ դաշինք հաստատելիս որպես երդման արարողություն, բաժակի մեջ լցված գինուն խառնում էին դաշինքի մասնակիցների արյունը, զենքը բաժակի մեջ թաթախելուց հետո խմում (Հերոդոտոս IV, 242-244):

Գինու պաշտամունքը և տարբեր առիթներով գինու «նվիրատվությունը» բնորոշ էր հին հնդեվրոպական ժողովուրդներին: Իսկ խեթերը զոհաբերվող կենդանու վրա գինի էին թափում: (Гамкрелидзе, Иванов, 652):



## 2. *Գինի* բառի գործածության հաճախականությունը, բառակազմական յուրահատկությունները

*Գինի* բառը հաճախական գործածություն ունի դեռևս V դարից: Կարելի է վստահորեն ասել, որ այն վկայված է ինչպես ինքնուրույն, այնպես էլ թարգմանական գրականության մեջ: Աստվածաշնչում բառը վկայված է 218 անգամ, Եզնիկի «Եղծ աղանդոցում»՝ 6, Ագաթանգեղոսի, Բուզանդի, Փարպեցու, Խորենացու «Պատմություններում» համապատասխանաբար 14, 19, 6 անգամ*:

*Գինի* բառով կան բազմաթիվ կազմություններ. ՆՀԲ-ում վկայված են հետևյալ բառերը գինածաղիկ (նաև գինեծաղիկ), գինավաճառու, գինարբու, գինարբութիւն, գինարբումն, գինաւէտ (նաև՝ գինեւէտ), գինեակ, գինեբեր, գինեբուղխ, գինեգոյն, գինեզանցութիւն, գինեզէն, գինէզինիմ, գինեզինութիւն, գինելից, գինեխազութիւն, գինեխմեալ, գինեխում, գինեծաղիկ, գինեկարաս, գինեկէզ, գինեկիզութիւն, գինեհամ, գինեհան, գինեհատ, գինեհատութիւն, գինեհար, գինեհարիմ, գինեհարութիւն, գինեճանութիւն, գինեմ, գինեման, գինեմոլ, գինեմրուր, գինենամ, գինեպաշտ լինել, գինեպաշտութիւն, գինեպետ, գինեսէր, գինեվաճառ, գինետեսակ, գինետեսիլ, գիներբուք, գինեւէտ, գինըմպելի, գինըմպու, գինըմպութիւն...

ԱԲ-ն հավելում է *գինետու, գինեհոտ:* Գրաբարի բառարանները չունեն *գինեճաւնութիւն* «որևէ բանի հիշատակին գինի նվիրելը»: Բառը վկայված է թարգմանական գրականության մեջ. «Իսկ տրամաբանականս այսպէս ասէ՝ եթէ

---

* Տվյալները՝ ըստ նշված գործերի համաբարբառի: Հաշվարկներում կարող են լինել չնչին բացթողումներ:

անմահ է հոգին, վասն զի իւրովք ամենայն մարդ զինէ-ձաւնութիւնս առնէ գնացելոցն» (Դ. Անյաղթ., Ստորոգ, 204):

*Գինի* բաղադրիչով բազմաթիվ բառեր կան նաև Ստ. Մալխասյանի բառարանում: Գրաբարում դրանցից մի քանիսի գործածությունը մեր կարծիքով, հավանական կարելի է համարել: Ինչպես՝ *զինատեաց, զինեգործ, զինեկան* «զինուն հատուկ», *զինեմոլութիւն, զինեմրրական, զինեչափ, զինոտ, զինուկ* «զինու խաղող»:

*Գինի* բաղադրիչով կազմված են մի շարք հատուկ անուններ: (ՀՀՇՏԲ-ում արձանագրված է քառասուն տեղանուն):

**ա) Վանքերի անվանումներ.** *Գինեբերդ կամ Գինեբերդի վանք, Գինեկանից Ս. Աստվածածին, Գինեբեր Ս. Նշան, Գինեբերի վանք:*

**բ) Բնակավայրեր.** *Գինեթաղք, Գինեկ, Գինկանց, Գինեկե, Գինեփոս* (գյուղերի անվանումներ են): *Գինի* Արևմտյան Հայաստանի գավառակներից մեկի անվանումն է:

**գ) Գետանուններ.** *Գինեգոյն, Գինի, Գինեկան* (տե՛ս ՀՀՇՏԲ, I, 864-866):

**դ) Անձնանուններ.** *Գինեվարդ/Գինէվարդ, Գինեբրուկ, Գինէ, Գինով, Գնէլ* (տե՛ս Անձ. Բառ.): Հ. Աճառյանը մերժում է *Գնէլ* անձնանվան կապը *գինի* բառի հետ «որովհետև այդ դեպքում պիտի լիներ Գինէլ (Անձ. Բառ., h. I, 477): Կարծում ենք ի<(ը) հնչյունափոխությունը (կամ *ի*-ի սղումը) մերժելի չէ: Նաև հնարավոր է այդ անձնանվան *Գին* «գինի կամ խաղող» արմատի առկայությունը: Պետք է ընդունել նաև *Գնունի* տոհմանվան մեջ *գին(ի)* բառը, որը նկատել է դեռևս Մ. Խորենացին:

Բառարանից քաղված անվանումների ժամանակագրության հարցը անորոշ է. Այսինքն՝ պարզ չէ դրանք հին թե՞ նոր անվանումներ են: Դա հնարավոր է պարզել միայն



մատենագրական տվյալներից: Խորենացին վկայել է *Գինա* գետանունը «Անցեալ զկամրջաւն Արտաշատ քաղաքի որսալ կինձս և իշավայրիս զակամբ Գինայ» (Խոր., II, ԿԱ): Թ. Արծրունին հիշատակում է մեկ այլ տեղանուն. «...բանակ արքային... սփռեալ առ լերամբն Գինոյ կոչեցեալ բլեր...» (ՄՀ, h. ԺԱ, 293):

Ուրեմն՝ *Գինա* տեղանունը V դ. արդեն կար, իսկ *Գինոյ* բլուրը X դ. (Արծրունին X դ. հեղինակ է): Ամենայն հավանականությամբ այդ անվանումները եղել են ավելի վաղ շրջանում:

«Գիտեմ և զԳնունիսդ զինի ունիս, որ զարժանի թագաւորին պատրաստէր զըմպելիսն, որ սքանչելի իմն դիպեալ եղև ըստ գործոյն և անունն. քանզի պատրաստէր զըմպելիսն արքայի յընտիր և ի համեղ զինեաց, ունէր և կոչումն անուանն Գին» (Խոր., II, Է): Գուցե և առարկելի «Գինի ունի(ս)» ժողովրդական ստուգաբանությունը, բայց տոհմանվան կապը «գինի» բառի հետ պետք է ընդունելի համարել: Գ. Սարգսյանը, ըստ էության, չմերժելով *Գնունի* տոհմանվան առաջին բաղադրիչ *գին* կամ *գինի*-ի առկայությունը, այդ արմատ է տեսնում և *Գնէլ* անձնանվան մեջ. «Գնունի տոհմանվան կապակցությամբ հիշատակելի է և «Գնէլ» անձնանունը: Թեև Խորենացին այն անմիջապես մասնակից չի դարձնում տոհմանվան ստուգաբանությանը, բայց և այնպես նրա մոտ այդ անվան երեք կրողներն էլ առնչվում են այդ տոհմին, ըստ որում դրանցից մեկը հանդես է գալիս որպես արքունի տակառապետ» (Գ. Սարգսյան, 2006, 94): *Գնունի* տոհմանվան վերաբերյալ մի դիտարկում ունի և Ս. Պետրոսյանը. «Գնունի նախարարական տոհմի համատեղած մատռվակ և հազարապետի պաշտոնների երբեմնի սերտ կապի տեսանկյունից ուշագրավ է այն հանգամանքը, որ ո՛չ միայն *Գնունի* տոհմի անունն ունի իր «խաղողա-գինիական»

զուգահեռները, այլև նրա զբաղեցրած հազարապետի պաշտոնի անունը»: Հազարապետ<հազար-ապետ, որտեղ *հազար*-ը «1000» չի նշանակում (Գնունիները հազարյակի պետեր չէին, այլ մատովակներ և երկրի գլխավոր տնտեսներ): Հմմտ. *հազարի* |<(հազար-ի «խաղողի մի տեսակ,... գինու խաղող»: (ՊԲՀ, 1999, 177):

Մի խոսքով՝ *Գնունի* տոհմանվան մեջ «գինի» բաղադրիչը մերժելի չէ:

### 3. Գինու տեսակների անվանումներ

Հնում ոգելից խմիչքներից ամենատարածվածը գինին էր:

Մեր մատենագրության մեջ որոշ տվյալներ կան նաև գինու տեսակների մասին: Այդ առումով հինգերորդդարյան գրականության մեջ առանձնանում է Աստվածաշունչը, որտեղ նշվում են *հավելումներով, թունդ, նոր* և այլ տարատեսակներ:

«Էջմիածին» ամսագրում հրապարակված բարձրարժեք գիտական հոդվածի հեղինակները մանրամասն անդրադարձել են Աստվածաշնչյան բոլոր վկայություններին՝ նշելով համախականությունը, եբրայերեն, հունարեն, լատիներեն համապատասխանակները*: Ուստի մենք Աստվածաշնչի բոլոր վկայություններին չենք անդրադառնա, կբերենք միայն մի քանի օրինակներ՝ ՆՀԲ-ի բացատրությունների առումով:

* Տե՛ս Բ.Գասպարյան, Հ.Ավետիսյան, Ա.Գնունի, Ա.Բոբոխյան, *Ոգելից խմիչքների հիշատակությունները Աստվածաշնչի հայերեն թարգմանության մեջ և դրանց պատմամշակութային համատեքստը*, «Էջմիածին»: Հոկտեմբեր, 2016, էջ 119-133:

Հայկական գինու մասին տեղեկություններ կան օտար պատմագիրների գործերում:

Ստրաբոնը Մելիտինեի գինին մրցակից է համարում հունական մոնորիտ կոչված գինիներին (Աճ., Ստրաբ., էջ 70): Ստրաբոնը նաև գրում է, որ «Հայաստանում կան շատ լեռներ և շատ լեռնադաշտեր, որոնց մեջ խաղողի այգին հեշտությամբ չի աճում» (ն.տ., էջ 55):



Բնականաբար, որակյալ համարվող գինու տեսակները մատչելի էին բարձր խավի ներկայացուցիչներին:

*Արքունի, թագավորական գինի*. «Զոր արքունի գինին ըմպեն» (ՆՀԲ): «Եւ կարգեաց նոցա թագաւորն ռոճիկս օր ըստ օրէ ի սեղանոյ արքայի, եւ ի գինւոյ զոր ինքն ըմպէր, սնուցանել զնոսա ամս երիս» (Դան., Ա, 5):

Ըստ ՆՀԲ-ի՝ «արքունի գինի. իբր ազնիւ գինի, որ ասի և թասուն, այսինքն Թասոս կղզւոյ»: «Դու զթասուն գինի ըմպէս, նմա և ոչ բաժակ մի ցուրտ ջրոյ տաս ի ծարաւ» (Ոսկ., Մտթ., Բ, 693):

*Անապակ գինի* «անջուր գինի, անխառն» (ՆՀԲ). «Առ զբաժակ գինւոյս անապակի այսորիկ» (ՆՀԲ):

*Անուշ գինի* վկայել է Ագաթանգեղոսը, իսկ 7-րդ դարի պատմիչ Հովհան Մամիկոնյանը նշում է նաև այդ կարգի գինու արտադրության վայրը. «Բայց զանոյշ գինին Ասորոց եւ *Սալնայ և Մորխայ* այս երկու տարի է, որ յինէն կտրեալ էին և ինքեանք արբին» (ՄՀ, հտ. Ե., 1093): Սալանը և Մորխը Արևմտյան Հայաստանի բնակավայրերից են:

*Անուշ* բաղադրիչով գրաբարում վկայված են *անուշահամ, անուշահոտ գինի,* որոնք նույնպես որակյալ գինիներ են համարվում:

«Գիրք Վաստակոց»-ում մի շարք տեղեկություններ կան գինու տեսակների վերաբերյալ. «Սև խաղողին գինին ուժով և թանձր լինի. սպիտակ խաղողին գինին միջակ է յուժոյն և վատոյժ և նօսր և սուր. կարմիր խաղողին գինին պարարտ է քան զսևին և խիստ արբեցուցանէ: Նոր տնկին գինին բնութեամբ այլ հով է, քան զհին այգւոյն, զի հին

այգւոյն գինին բնութեամբ տաք է բնական գիջութեամբ» (Վստկ., 84):

Ահա մի հատված էլ, որտեղ ուշագրավ է հատկապես վերջին նախադասությունը՝ որպես միջնադարյան սնոտիապաշտության արտահայտություն. «Եւ գիտելի է, որ երաշտ տարւոյն գինին պինտ և ուժով լինի. և պարտ է որ առնուս անձրևաջուր, և եփես այնչափ, որ մնա կէսն և գինին խառնես և սակաւ զըմուռս, նա խիստ լաւացուցանէ զգինի...: *Եւ պարտ է, որ ամենեւին անպատեհացեալ կին ի մառանն չմտանէ, թե ոչ՝ աւերի այն գինին, որ այն կնոջ հոտն ի յինքն դիպի և որպէս զջուր դառնայ»* (Վստկ., 93: Ընդգծումը մերն է – Լ.Հ.)»[*]:

*Ծաղկահամ գինի* – ՆՀԲ ունի միայն մեկ վկայություն: Առաքել Դավրիժեցու գրքում նույնպես նշվում է որպես ընտիր գինի. «Պատուեցին զնա համադամ կերակրօք և ծաղկեհամ գինեաւ» (Դվրժ, 25): ՆՀԲ վկայում է նաև *ծաղկահոտ գինի*[**]:

[*] «Գիրք Վաստակոց»-ում բազմաթիվ միջոցներ են առաջարկում գինու որակը, համը, հոտը բարելավելու վերաբերյալ: Բերենք միայն այդ հարցերին վերաբերող բաժինների մի քանի վերնագրեր:
«Վասն գինւոյ որ անուշահոտ առնես»: «Վասն այլ ազգ անուշահոտ առնելոյն զգինին»: «Վասն որ զպինդ գինին անուշահամ առնես»: «Այլ, վասն անուշացուցանելոյ զգինին»: «Վասն որ զնոր գինին շինես, որ զերդ հին գինի լինի»: «Վասն դեղոց զոր առնես, որ նոր գինին զերդ հին դառնայ անոյշ հոտով և համով»: «Վասն որ զմէկ տարւոյ գինին զերդ ԺԵ տարւոյ շինես»: «Վասն որ զվատոյժ գինին ուժտար առնես»: «Վասն որ զպինտ գինին կակղացուցանես» «Վասն գինւոյ, ...որ զոյժն և զառողջութիւնն պահէ զմարդոյն և չտայ ի ծերութեանն վատուժել» (էջ 105-118):

[**] Որակյալ բարձրորակ գինի ունենալու համար անհրաժեշտ են մի շարք պայմաններ՝ հողի տեսակը, այգեկութի ճիշտ ժամանակի ընտրությունը, եղանակը: Խոնավ ու անձրևային օրը ոչ միայն դժվարացնում է քաղի աշխատանքը, այլև ազդում է գինու որակի վրա: «Խաղողի քաղը պէտք է սկսել արևածագից հետո, երբ առաւօտուայ



Անուշահամ գինու տեսակ է և *քաղցու*-ն. Առաջին վկայությունը Աստվածաշնչից է. «Եւ որովայն իմ իբրեւ զտիկ քաղցուոյ կապեալ եռայ» (Յոբ, ԼԲ, 19): *Քաղցուի* հոմանիշներ են *խազմուզ* և միջինհայերենյան շրջանից ավանդված *մուստառ* բառերը: Վերջինս պարսկերենից կատարված փոխառություն է (ՀԱԲ, III, 361): *Խազմուզ*-ը ՀԱԲ-ում ստուգաբանված չէ: Գ. Ջահուկյանը ենթադրում է, որ բառը կազմված է *խազ* «խակ» մուզ (մզել բայի արմատը) բաղադրիչներից (ՋՀԱԲ, 308):

Մեծավաստակ գիտնականի այս ենթադրությունը կասկածելի է, քանի որ քաղցուն խակ խաղողից չեն պատրաստում:

*Քաղցու*-ն հ.-ե. *dik-s-ḱu «քաղցր»-ի ծագումը կասկած չի կատարում (տե՛ս ՋՀԱԲ, *քաղցր* բառահոդվածը):

Որակյալ է համարվում և *պարզ* կամ *պարզեալ* գինին: «Կանայք... նախարարացն և կանայք աւագաց... փոխանակ պարզ գինւոյ ջուր չափով ըմպէին» (Փարպ., ԿԱ):

Պայմանականորեն գինու տեսականու մեջ կարելի է ներառել և *քացախ*-ը: ՆՀԲ-ում նույնպես այն համարվում է ոգելից խմիչք. «Կծու և բարկ ըմպելի՝ ի թթուութենէ գինւոյ և այլոց հիւթոց կազմեալ. համեմիչ, զովացուցիչ, զօրացուցիչ»:

ցողը անցել է և դադրեցնել երեկոյան զովը ընկնելուց առաջ» (Մելիք-Շահնազարեան, 110): Հեղինակը խորհուրդ է տալիս, որ նույնքան բծախնդիր պիտի լինել քաղցուի պատրաստման ժամանակ: «Ամէն այգէտէր իւր շիրատունը գետնի մակերեւոյթից ցած պիտի չշինէ... օրը մի երկու անգամ շիրատան օդը պիտի փոխել... շիրատուն մտնելուց առաջ. առջևից ցած բռնած վառ ճրագ տանել, եթէ ճրագը հանգաւ, պիտի առաջ չգնալ, մինչև որ ներսի օդը դուրս չանունին... Գաղիայում տարի չէ անցնել, որ տաքարի մէջ մի քանի տասնեակ մարդիկ չխեղդուին իրենց անզգուշութիւնից» (էջ 22):

Ըստ երևույթին, *բացախ*-ը տարբեր չափաբաժիններով և այլ նյութերի խառնուրդով նաև օգտագործելի էր որպես դեղ. օրինակ՝ (*Քացախաթան* բառը ըստ ՆՀԲ-ի նշանակում է «Օշարակ բժշկական ի մեղրէ և ի քացախէ՝ խառն ընդ աղի և ջրոյ»: *Քացախ* բառով կան մի շարք կազմություններ. *Քացախագոյն, բացախեմ, բացախութիւն, բացախուտ* (ՆՀԲ, II,):

Ստուգաբանական բառարաններում *բացախ*-ը ստուգաբանված չէ:

*

* *

Թեև հին մատենագրության մեջ տեղեկություն չկա գինու գունային առանձնահատկության մասին, սակայն ենթադրելի է, որ սկզբնապես եղել է կարմիր գինին (բնականաբար և խաղողի այն տեսակը, որից ստացված է այդ խմիչքը): (Տե՛ս Гамкрелидзе, Иванов, II, 647):

## 4. Խմիչքի այլ տեսակների անվանումներ
### ա) Օղի, ցքի

Ոգելից խմիչքներից գրաբարում ավանդված են նաև *օղի* և *ցքի* բառերը:

*Օղի* բառը գրաբարում հաճախական չէր: Ըստ Աստվածաշնչի համաբարբառի՝ վկայված է մեկ անգամ. «Զի եղիցի մեծ առաջի Տեառն, եւ գինի եւ օղի մի արբցէ» (Ղուկ., Ա, 15): Բառը, սակայն, առկա է նաև Ս. Գրքի այլ բաժիններում. «Արդ զգոյշ լեր, զուցէ ըմպիցես գինի եւ օղի» (Դատ., ԺԳ, 4): (Տե՛ս նաև Դատ., ԺԳ, 7, 14): *Օղի* բառի հուն. համապատասխանակը σικερα-ն է, լատ. sicera, ռուսերեն Աստվածաշնչում նույնպես՝ сикера, ֆրանս. boisson alcoolique (Դատ., ԺԳ, 13):



Հայերենում օղի բառով կազմություններից են *ամբրաւօղի, մեղրօղի, հացօղի* (վերջինս ՆՀԲ-ում վկայված չէ): Նշված երեք բառերը վկայել է Հ.Մանդակունին (V դ.): «Գինի և ցքի ոչ ըմպէին, զի գինի եւ հացօղի և մեղրաւղի մի են, զոր գիրք վկայեն» (ՄՀ, Ա, 1284): (Ամբրաւաղի-ն արմաւօղին է. տե՛ս ՆՀԲ, *Արմաւօղի* բառահոդվածը):

Օղու և գինու տարբերությունը ոչ միայն հումքի հետ է կապված (հնում *գինին* պատրաստում էին միայն խաղողից), այլև թնդության աստիճանից: Պատահական չէ, որ ՆՀԲ *օղի* բառը բացատրում է. «Ցքի. ըմպելի բարկ՝ ոգելից»:

*Օղի* բառի համար Գ. Ջահուկյանը ենթադրում է հ.-ե. ծագում. *aulio-, *au(e)- «հոսել, թաց, ջուր» արմատից (ՋՀՍԲ, էջ 102):

Գ. Ջահուկյանը որպես զուգահեռ նշում է նաև ռուս. вода և водка բառերը: Վերջիններս ստուգաբանորեն առնչվում են հայ. *գետ* (հ.-ե. ved-) հետ: Հ. Աճառյանը հ.-ե. մի շարք լեզուներից նշում է զուգահեռներ (ՀԱԲ, IV, 613): Եթե հավաստի են (լիտ. alus, հպրուս. alu, հ. ռուս. олъ), ապա հայ. *օղի*-ի հ.-ե. ծագումը նույնպես կարելի է հավաստի համարել:

*Ցքի* – Հայկազյան բառարանները (ԱԲ, ՆՀԲ) մեկնում են «օղի»: ՀԱԲ-ը «արմաւից պատրաստած մի տեսակ արբեցուցիչ ըմպելիք, օղի», նույն բացատրությունն է ՋՀՍԲ-ում: Բառը ստուգաբանված չէ: 5-րդ դ. ինքնուրույն գրականության մեջ հաճախական գործածություն չունի: Բառը վկայված չէ Կորյունի, Եզնիկի, Ագաթանգեղոսի, Բուզանդի, Եղիշեի, Փարպեցու աշխատություններում: Վկայություն ունի միայն Հ. Մանդակունին:

Ս. Գրքում *ցքի*-ի հուն. համապատասխանակը, ինչպես *օղու* դեպքում՝ σικερα-ն է. հմմտ. «Գինի և ցքի մի՛ ըմպիցեք...» (Ղեւտ., Ժ, 9). հուն. οἶνον και σικερα. ռուս. «вина и крепких напиток», ֆր. boisson alcoolique:

*Ցքի*-ն եբր. shekar, հուն. sikera բառերի թարգմանությունն համարելը ճիշտ չէ: Հայ. *ցքի*-ն եբրայերենի կամ հունարենի համապատասխանակի տառադարձման փորձ է:

Հ. Հացունին օղու և ցքի-ի աստվածաշնչյան վկայությունների հիման վրա ենթադրում է, որ «երկու հայեցի կոչմունք... զոնէ կհամոզեն զմեզ՝ թէ *մեր քով ալ կային արուեստական ըմպելիք*, թէև ոչ շատ յաճախեալ» (Հացունի, 23, ընդգծումը մերն է – Լ.Հ.):

Կարծում ենք՝ այս ենթադրությունը առարկելի է, որովհետև հիշյալ ոգելից խմիչքների վկայությունները հիմնականում թարգմանական գրականությունից են, կապ չունեն հայկական իրականության հետ:

## բ) Գարեջուր

Բառի երկու բաղադրիչները հ.-ե. ծագում ունեն: Գարու մշակման նախնական տարածքը համարվում է Առաջավոր Ասիան և Աֆրիկան (Гамкрелидзе, Иванов, էջ 656): Հայերենում բառը, ինչպես և գարեհաց (գարեաւ հացիւ) հինգերորդդարյան վկայություններ են, *գարին* նաև չափման (կշռի) միավոր է (ՆՀԲ, I, 531):

*Գարեջուր* բառը վկայված է ուշ շրջանից: ՆՀԲ-ում V-XII դարերից վկայություն չկա: Բառարանների (ՆՀԲ, ԱԲ) բացատրություններն էլ՝ «ջուր գարւոյ» որոշակի որակական հատկանիշներ, ըստ էության, չեն նշում:

Հայաստանում այդ խմիչքի արտադրության մասին հիշատակում է Քսենոփոնը. «Տներն այստեղ գետնափոր էին, մուտքը ինչպես ջրհորի բերան... Այնտեղ կար նաև ցորեն և գարի և ընդեղեն և կրատերների մեջ գարուց պատրաստված գինի, որի երեսին լողում էին գարու հատիկներ» (Քսենոփոն, էջ 97): Թարգմանիչը ծանոթագրում է, որ այս համատեքստում *կրատեր* նշանակում է գինու խոշոր կարաս: (էջ 261):



Հայ թարգմանիչը հուն. οινοσ-ը թարգմանել է «գինի»՝ հարազատ մնալով բնագրին: Հունարենում բառը ունի երկու իմաստ. 1. գինի, 2. գարեջուր (Фасмер, II, 1159): Քսենոֆոնը նաև նշում է, որ այդ «Գինին շատ թունդ է, եթե ջուր չխառնեին»:

Գարուց պատրաստված ըմպելիք հասկացությունը ունի նաև այլ անվանումներ:

*Գարեջուր*-ի ավելի հին անվանումն է *կասկաջուր*-ը, որի առաջին բաղադրիչը մ.պրս. *kašk, պրս. kask «գարի» բառն է: Արդյոք *գարեջուրը* և *կասկաջուր* ոգելից խմիչքներ էին, թե այլ որակ, ու կիրառական առանձնահատկություններ ունեին: Այս հարցի հստակ պատասխան դժվար է գտնել: *Կասկաջուր*-ը, ըստ երևույթին հիմնականում դեղամիջոց էր: Այդպես է ամենահին վկայության մեջ՝ «Վարք Եւագրայ»-ում. «Ոչ կերեալ խաւարտ և ոչ բանջար դալար... այլ հաց և գինի ամենեւին ոչ ճաշակեալ: Բայց յորժամ կարի տկարացաւ մարմինն ի խիստ վարուցն, սակաւ մի կասկ ընդ արմաւաջուր խառնեալ վասն կարի ցաւոյ ստամոքսին զայն էառ ջեռուցեալ հրով. այլ ի հաց և ի գինի և ոչ ի կարի կարէպէտս հիւանդութեան մերձեցաւ: Բայց միայն ճաշակէր սուղ ինչ բանջար և ունդս և կասկաջուր մինչև ի վախճանն» (Վրք. հրնց., հտ I, էջ 322):

Գարեջուրը՝ որպես դեղամիջոց, բազմիցս նշում է նաև Մ. Հերացին. «Թէ կարիք լինի զմարմինն սրբելոյ սրբէ գարեջրով և քաղցր նռան ջրով» (41), «... տո՛ւր շնխաղող ջրով և տուր գարեջուր հունապով» (72):

Մ. Հերացու գրքում բազմաթիվ դեղամիջոցներ կան որևէ բուսանուն+*ջուր* բառակապակցությամբ, ինչպես *շնախաղող ջրով, գնձի ջուր, զառնալեզուի ջուր, մրգաջուր, վար-*

*դի ջուր, աղտորի ջուր, նռան ջուր, սիսռան ջուր, դդմի ջուր...* (էջ 72-73, 95-96): Սրանք հյութերի անվանումներ են, իսկ վերջին երկուսը կարող են լինել ուտելիքի տեսակներ՝ *խյուս:* Հմմտ. «Եւ զկերակուրն հացի փշրուկ տուր, և ճակնտեղի բազուկ և սիսռան ջուր զամէնդ քաղցր նշի ձիթով» (83):

Վերը նշված «ճաշակէր սուղ ինչ *բանջար* և *ունդս* և *կասկաջուր»* (ընդգծումը մերն է – Լ.Հ.) շարքում *կասկաջուր*-ի համար ենթադրելի է և ուտելիք (գուցե ջրով եփած գարի) իմաստ:

Հավելենք նաև, որ Վ. Հացունու աշխատության մեջ *գարեջուր* և *կասկաջուր* –ոգելից խմիչքների շարքում չկան:

*Գարեջուր* բառի հոմանիշ կարելի է համարել և *գարե-կորկոտ/գարէկորկոտը:* ՆՀԲ-ն մեկնում է. «կորկոտ գարւոյ»՝ հղելով Գիրք Վաստակացի ը գլուխը՝ առանց բնագրային վկայության: Ահա այդ օրինակը. «...Գիճային գինին լաւ է ... քան չորային գինին և այսու ամենայնիւ փրկին մարմինք այնպիսեաց ի վշտաց և ի բազում ախտից. և գարէկորկոտն լավ է նոցա» (Վստկ., էջ 8): «Գիրք Վաստակոցի» ծանոթագրության մեջ բացատրվում է այդ բառի իմաստը և նշվում հունարեն համապատասխանակը. «ըմպելի գարւոյ, ըստ յունին πτισάνη (ն.տ.): Հունարենում բառը ունի «գարուց պատրաստված ըմպելիք, կամ եփուկ» (Ячменный напиток или отварь) (Дворецкий, 1437): Բնականաբար ՆՀԲ-ի բացատրությունն էլ ճշգրտման կարիք ունի:

Գարեջրի մասին տեղեկություններ է հաղորդում նաև Ամիրդովլաթ Ամասիացին. «Թէ զգլուխն գարէ ջրով լուանան՝ զմոռացկոտութիւնն տանի, եւ գլխուն գիճութիւն տայ…» (Անգ. Անպ. 109): Գարեջուրն զավելի խլտերն կու հանէ. եւ թէ ցորենի ջրով... եփեն՝ զկաթն և զգոզն յորդորէ (ն.տ. 341): Այս օրինակներում էլ, ինչպես նկատելի է, գարեջուրը դեղամիջոց է, և հստակ չէ հեղուկ թե ավելի թանձր նյութ լինելը: Նույն



հեղինակի գրքում հանդիպում ենք և *գարու գինի* (ընդգծումը մերն է – Լ.Հ.) հասկացության, որն անշուշտ ոգելից թույլ խմիչք է. «Ցորենէն եւ գարուն և կորեկէն եղած գինուն ուժն ցած է և զգոզն յորդորէ» (ն.տ., 404):

*Գարի* բաղադրիչով (նկատի ունենք նաև *կասկ* «գարի» բառը) կան մի շարք կազմություններ: Որպես ոգելից խմիչք կարելի է համարել Քսենոփոնի՝ «գարուց պատրաստված գինի» և Ամիրդովլաթի *գարու գինի* վկայությունները:

## 5. ՀԱՐԲԵՑՈՂՈՒԹՅՈՒՆ, ԳԻՆԸՄՊՈՒԹՅՈՒՆ

5-րդ դարի տարաբնույթ գրականության մեջ, ի թիվս այլ հարցերի, բազմաթիվ վկայություններ կան նաև հարբեցողության վնասների ու վտանգների, հարբեցողությունը մերժելու մասին:

Գ. Լուսավորիչը ավելի խիստ է հարբեցող հոգևորականների հանդեպ, որոնց արգելում է պատարագ մատուցել մինչև «բազում արտասուաւք եւ գթով տնանկաց ապաշխարեսցէ, զի արբեցողք ընդ սպանողս են» (ՄՀ, Ա հատ., 144):

Լուսավորչի 9-րդ ճառի մի ամբողջական հատված նվիրված է հարբեցողության քննադատությանը. «Գինի առավել յիմարեցուցանէ զգայութիւնսն և զմիտսն եւ եռացուցանէ զցանկութիւնսն և յանառակութիւն շարժէ, ... գինի թմբրութիւն սրտի, պապանձումն բերանոյ, խաւար աչաց, խլութիւն ականջաց, լուծութիւն ձեռաց, գայթակղութիւն ոտից, ցնորք խորհրդոց, ծանրութիւն քնոյ, թշնամի արդարութեան: (ՄՀ, I, 57):

Հաջորդ պարբերության մեջ նշում է հիվանդների և տկարների համար գինու չափավոր օգտագործման անհրա-

ժեշտությունը, իսկ առողջներին և հատկապես երեխաներին խորհուրդ է տալիս գինի չխմել:

Սահակ Պարթևի 33-րդ ճառն էլ վերնագրված է «Վասն ոչ առնել գինարբուս ի լալիս» (ՄՀ, I, 161):

Նման բնույթի է նաև Հ. Մանդակունու. «Վասն արբեցողաց անաւրէնութեանց» ճառը: Ահա մի հատված. «Անչափութեամբ գինւոյն զեղխեալ յիմարին եւ թմբրին իբրեւ զանբան անասունս... եւ դու յանառակ արբեցութեանդ թմբրիս և յիմարիս և ի մտաց անկանիս, եւ չես ի մարդկան համարի, այլ ի վայր եւս քան զանասուն» (ՄՀ, I, 1226):

Մեկնաբանելով Աստվածաշնչի «Անառակ է գինի, եւ թշնամանող է արբեցութիւն...» (Առակ, Ի, 1) հեղինակը հավելում է. «Ոչ թէ զըմպելն արգել, այլ զարբենալն»:

Խորենացին հարբեցողներ է համարում ժողովրդականներին ու զորականներին. «Ժողովրդականք ստահակ... անվաստակ արբեցողք... Զօրականք անարիք, սնապարծք... գինարբուք» (III, ՀԸ):

Իսկ ըստ Եզնիկի՝ «Գինի զբազմութիւն ախտից զարթուցանէ և զերկիւղն Աստուծոյ հալածէ» (303):

Հարբեցողությունը պախարակելու նմուշներ կան նաև հետհինգերորդդարյան գրականության մեջ: Սիմէոն Աղձնեցին գրում է. «Գինարբութիւն մատն կախարդաց և մատռուակ չարին: Արբեցութիւն շուն կատարեալ և զիւր մարմինս ուտէ: Գինարբուն խաւար պատրոյգ և շիջեալ լոյս, թշուառական կեանք, պսակ փշոց և գինդ ոսկի ի քիթս խոզի» (ՄՀ, Ժ դար, հտ. Ժ, 93)*:

---

* Հարբեցողության քննադատություն կա նաև հին՝ ոչ քրիստոնեական գրականության մեջ: Ահա մի հատված զրադաշտական տեքստերից. «Չափից ավելի գինի խմողները ունեն շատ թերություններ, որովհետև գինին նվազեցնում է նրա բանականությունը, խելքը, սերմը և արյունը,



Ընդհանրացնելով վերոհիշյալ վկայությունները՝ ակնհայտ է դառնում այն, որ բովանդակային և ժամանակագրորեն տարբեր բազմաթիվ աշխատություններում մերժվում, պախարակելի երևույթ է համարվում հարբեցողությունը, իսկ չափավոր խմելը նույնիսկ խրախուսվում է**:

Գրաբարում *հարբել, գինովանալ* հասկացությունը արտահայտվում է մի շարք բառերով ու բառակապակցություններով, դարձվածային միավորներով:

1. *Արբ* արմատով մի շարք կազմություններ: Այս արմատը ունի «խմել» և «հարբել» իմաստը: Ըստ Ս. Գրքի՝ առաջին հարբած մարդը Նոյն էր. «Եւ սկսաւ Նոյ, այր հողագործ, զերկիր գործել, եւ տնկեաց այգի, եւ արբ ի գինւոյն եւ արբեցաւ, և մերկացաւ ի տան իւրում» (Ծննդ., Թ., 20-21): Աստվածաշնչյան՝ Նոյի հարբելու վերաբերյալ Հ. Մանդակունին ունի իր բացատրությունը. «... զի և Նոյի հրամայեաց ըմպել գինի վասն տրտմութեան, զի ցՆոյ գինի ոչ էր, բայց միայն խաղող» (ՄՀ, հտ. Ա, Ե դար, 1284):

*Արբենալ* – ունի հիմնականում «հարբել, գինովանալ» իմաստը:

*Արբ* արմատով կազմություններից են *արբենամ, արբեցութիւն, արբեցուցանեմ... Արբեցություն* բառի հոմանիշ է և գինութիւն-ը՝ եզակի վկայությամբ:

---

քայքայում է սիրտը ... թուլացնում է ուժը, դիմադրողականությունը, մոռացնել է տալիս աղոթքը և աստծուն փառաբանելը» (Зораст, 96):

** Արժե հիշել Վ. Այգեկցու առակը, ըստ որի թագավորի որդին շատ հարբած վիճակում ընկնում է աղբանոցում և մեռնում: Թագավորը հրամայում է քանդել բոլոր այգիները և ջարդել գինու կարասները: Մի պառավ կին, այդ հրամանին չենթարկվելով, ամեն օր մի բաժակ գինի է տալիս տղային, որը ուժ է տալիս վերջինիս, և նա սպանում է առյուծին: Թագավորը հրաման է տալիս վերականգնել այգիները և այնպես խմել, որ առյուծ սպանել և ոչ թե աղբանոցում մեռնել: (Տե՛ս Մխիթար Գոշ, Վարդան Այգեկցի, Առակներ, Ե., 1951, 78-80):

*Արբ* արմատով վկայված մի շարք կազմությունների իմաստների համադրությամբ Հ. Աճառյանը նկատում է, որ «խմել» իմաստը հետզհետե տեղի է տալիս «հարբել» իմաստին (ՀԱԲ, I, 299):

Ենթադրվում է հին *արբանեմ բայի գոյությունը, և «նոր լեզուն պահում է միայն «գինովնալ, հարբել» նշանակությունը (ն.տ.): Աշխարհաբարի և բարբառների հ-ով ձևերը Աճառյանը համարում է հ.-ե. s-ի «թանկագին մեկ մնացորդ» (ն.տ.):

2. *Գինի* բաղադրիչով մի շարք կազմություններ *գինարբու, գինէզէն, գինեխազութիւն, գինեկիզութիւն, գինեճանութիւն, գինեմոլ, գինենալ:*

Ուշադրության արժանի է *գինի* և *զէն* բաղադրիչներով կազմված *գինեզէն* «հարբած», *գինեզինութիւն* «հարբելը», *գինեզինել* «հարբել» բառերի երկրորդ բաղադրիչի հարցը: ՆՀԲ-ում երկրորդ բաղադրիչը նույնացվում է զէն «զենք»-ի հետ: *Գինեզէն* «գինով զինեալ, այսինքն արբեալ կամ արբեցուցեալ»: ՆՀԲ-ի այս ստուգաբանությունը առարկելի է: Կարծում ենք զէն-ը իրանական zadan «խփել, հարվածել»-ի zan ներկայի հիմքն է, որը բառակազմական կաղապարով նույն է, ինչ հայերենում *գինեհար* բառացի «գինու խփած, հարվածած», հարբած: Բերենք մեկական օրինակ. «Գինեզինեալ ի խնջոյսն՝ վավաշոտէր ի կին մի»: «Գինեհարութիւամբք, անառակութեամբք, արբեցողութեամբք» (ՆՀԲ, I, 553):

Կա և *գինէզենեալ* գրությունը, որտեղ ակնհայտորեն երկրորդ բաղադրիչը *զէն*-ը չէ:

*Գինեճան* – բառում ճան-ը իրանական čan ածականակերտ ածանցն է:

Բերենք հայ մատենագրությունից *գինի* բառով մի քանի դարձվածներ՝ «հարբել, հարբեցողություն» նաև «գինի խմել» իմաստով:



*Ընդ գինիս մտանել* «հարբել»: «Եւ իբրեւ ընդ գինիս եմուտ Բաղդասար հրամայեաց բերել զսպասս արծաթոյ» (Դանիէլ, Ե., 2): «Ապա իբրև ընդ գինիս մտին, քաջ արբեալ լինէին թագաւորն և որ ընդ նմայն էին...» (Բուզ., III, Ի):

*Ի գինւոջ լինել:* «Եւ ինքն ի գինւոջ էր և ամենայն թագաւորք, որ ընդ նմա ի խորանս» (Գ. Թագ., Ի 12):

*Գինին զալ զակամբ:* «Գինի խմելուց հարբել, աչքերը մթագնվել»: «Գինին եկն զակամբ նորա» (Բուզ., 174):

*Զայրանալ ի գինւոյ:* «Աւուրք թագաւորաց ձերոց, սկսան իշխանք զայրանալ ի գինւոյ, եւ ձգեցին զձեռս իւրեանց ընդ ժանտագործս» (Ովսէ, Է, 5): Աշխարհաբար թարգմանվում է... «վառվել գինուց»:

Հինգերորդ դարի մատենագրությունից այլ օրինակներ.

«Եւ եղեւ իբրև անցին զառանցին ի գինւոյն՝ ըստ չափ անցանելով, և թագաւորն Վարազդատ պահէր զանձն ի գինւոյն...» (Բուզ., III, ԼԷ):

«Գինի կալաւ զխմելս նորա...» (ՆՀԲ, 70):

«Կիզան ի համոյ հրաբաժակ գինւոյն» (Ագաթ., 253):

«Դարձեալ երբեմն ի խնջոյս ուրախութեան Խոսրով Գարդմանացի ի գինւոջ զեղխեալ առաջի Շապհոյ՝ զօրէն սեղեխի տոփեցելոյ զհետ ջնարահար քաջամատն կնոջ կրթէր» (Խոր., III, ԾԵ):

*Զգլխել գինւով* «հարբել» բառակապակցությամբ եզակի վկայություն ունի ՆՀԲ: «Կարի արբեցող զայն ասեմ, որ ոք յորի գինւովն զգլխիցէ» (ՆՀԲ, I, 727):

*Գլխեմ* - բառարանը հղում է տե՛ս *գլխաւորել:* Վերջինս բազմիմաստ է, բայց հարբեցողության հետ առնչվող որևէ նրբիմաստ չունի: Գ. Ջահուկյանը հ.-ե. հիմքեր ունեցող զ նախածանցով կազմությունների շարքում նշում է *զգլխեմ* (Ջահուկյան, 1987, 243): *Զգլխել գինւով* կապակցության մեջ

*գլխել*-ի «կործանել» իմաստը կա ՀԱԲ-ում (I, 565), որով պարզ է դառնում կապակցության իսկական նշանակությունը:

Ժամանակակից հայերենում, հատկապես ժողովրդախոսակցական լեզվում, նման կարգի դարձվածները ավելի շատ են: Դրանց մի մասը (երևի զգալի մասը)՝ որպես ոճական յուրահատուկ արտահայտություն կապ ունի գրաբարյան լեզվամտածողության հետ, օրինակ՝ *գինեհար, գինէզան* բառերի երկրորդ բաղադրիչները փոխակերպված կազմություն կարելի է համարել *գինին գլխին խփել (զարկել)* դարձվածները:

Գինի + *կիզանել, այրել* գրաբարյան բաղադրիչներով կազմությունների համապատասխանակ կարելի է դիտել *գլուխը (կատարը, քյällան) տաքանալ* «գինովնալ, հարբել» և այլն:

*

* *

*Մխալակ* բառի եզակի վկայությունը Աստվածաշնչից է. «Շարժելով շարժեսցի երկիր, իբրեւ զարբեալն եւ զմխալակ, գլորեսցի եւ և մի՛ կարասցէ կանգնել» (Եսայի, ԻԴ, 20): Արմատական բառարանում *մխալ* և *մխալակ*-ը առանձին գլխաբառեր են: Վերջինիս համար նշվում է «հարբած» իմաստը՝ վկայակոչելով Ս. Գրքի վերոգրյալ հատվածը:

*Արբեալ*-ը և *մխալակ*-ը հոմանիշներ չեն: *Մխալակ* նշանակում է «հարբածությունից երերող, օրորվող»: Այդպես էլ թարգմանված աշխարհաբար. «Հարբածի ու երերողի պէս պիտի գլորուի եւ պիտի չկարողանայ կանգնել»:

Ի դեպ, ՆՀԲ-ն իրավացիորեն նշում է «գայթոտ որպէս զարբեալ»: Գրաբարի և հունարենի նշված հատվածները համեմատելով՝ Ա. Մեյեն նկատել է շարադասական մի առանձնահատկություն, որով հիմնավորում է *մխալակ*-ի նրբիմաստը: «Եսայի մարգարեի այս հատվածում Յոթանասնիցը և հայերեն թարգմանությունը, թեև վերջինս կախում ունի առաջինից, տողերի հերթականության և այս հատվածն արտահայտելու ձևի, այսինքն ոճի մեջ ներկայացնում են բավականին մեծ տարբերություններ… սակայն արժե նկատել, որ հայերեն բնագրի ձեռագրային համեմատությունը լավ է բացահայտում *մխալակ* բառի իմաստը… երկիրը ինչպես հարբած մարդ, դողում է, երերում, տատանվում և փուլ գալիս (Մեյե, 1978, 64-65):

*Մխալակ*-ը պահել է հ.-ե. համապատասխան արմատի (ըստ Արմ-ի sqhal, ըստ Մեյեի և Ջահուկյանի *skhal- *skhel-) «սայթաքել, երերալ, տատանվել», նախնական իմաստը*:

*

* *

Հարբեցությունից սթափվելու, զգաստանալու հասկացությունը գրաբարում արտահայտվում է *թափել զգինի* (երբեմն սթափել զգինի) բառակապակցությամբ (Սաղմոս, ՀԷ, 65):

*Գիրք վաստակոց*-ը առաջարկում է չհարբելու մի յուրօրինակ միջոց. «Առ զխոտն որ կոչի քամափիթօս և գտակ շինեա և ի գլուխդ դիր, այն օրն քանի խմես չարբենաս: Եւ թէ առնուս երկու գլուխ ծիծռան, մէկն որձ, մէկն մարի և լեսես մանր և սակաւ մի մուռ ծրար առնես և ի գինին ձգես, այլ չարբեցուցանէ՝ քանի շատ խմէ ոք» (Վստկ., 123): Ծանոթագրվում է, որ քամիփիթոսը լեռնային դաղձն է, «որ կոչի ի մեզ և խոռն» (ն. տ., 263): *Խոռնը* այժմ էլ գործածական է

* Ղարաբաղի բարբառի *լուլ* «սատիկ հարբած» բառը գրաբարում թեև ավանդված չէ, բայց բնիկ հայերեն բառ է՝ հ.-ե. *lel «երերալ, շարժվել» (Ջահուկյան, 1972, 295):

Ղարաբաղի բարբառում: *Մուր*-ը գրաբարում գործածվում է *զմուռս* ձևով:

Եթե բացառելի չէ լեռնային դաղձի օգտակարությունը, ապա *ծիծառն*-ի հետ կապը ինչ-որ անմեկնելի միջնադարյան խորհրդանիշ է:

Գրաբարում *զինեհատ լինել, զինեհարութիւն* նշանակում է «Գինուց՝ խմելուց հրաժարվել, ոգելից խմիչք չօգտագործել»: Հ. Մանդակունին «Վասն պնդութեան» ճառում գրում է. «Ոմանք զինեհատք միայն, ոմանք թանահատք, այլ և ոմանք հացահատք լինէին» (ՄՀ, Ա հատ., 1172): *Գինեհատութիւնը* բառի մի վկայություն նշում է ՆՀԲ՝ Եղիշեից:

Գիրք Վաստակոցի «Վասն դեղոյ որ գինեսէր մարդն զգինին ատէ» բաժնում առաջարկվում է հետևյալ միջոցը. «Ժողովեա ի հօտին ժամն զջուրն որ ելանէ ի տնկոյ այգւոյն, և տուր զաղտ որ խմէ, ատէ զգինին յափտեան» (Վստ., 123):

*
* *

Նպատակահարմար գտանք այս ենթաբաժնում անդրադառնալ *մատռուակ* բառին: Բառը վկայված է V դարից:

Մատռուակի հոմանիշներ են համարվում *գինեպաշտ, տակառապետ* բառերը: Գ. Ջահուկյանը այդ շարքին հավելում է և *արբուցիչ*-ը (Ջահուկյան, 1987, 392)՝ հավանաբար նկատի առնվլով ՆՀԲ-ի *մատռուակն արբուցիչ* վկայությունը (ՆՀԲ, I, 343): *Գինեպաշտ* - ՆՀԲ չի վկայում, բայց կա *գինեպաշտութիւն* «մատռուակություն»: Բնականաբար ենթադրելի է նաև *գինեպաշտ*-ի գոյությունը: Ե. Մեղրեցու բառարանում կա *թասատու* «մատռվակ» բառը, (Տե՛ս ՀԱԲ, II, 156): Գինեպաշտ, գինեպաշտութիւն բառերի *պաշտ*-ը ունի



«ծառայել, սպասավորել, մատուցել» իմաստը: *Պաշտ*-ի հին ձևը *պարիշտն* է: (Պաշտ) պարիշտ իրանական լեզուներից կատարված փոխառություն է: Գրաբարի բառարաններում չարձանագրված *բերանապարիշտ* «մատռվակ», բառացի՝ «բերանի ծառայող» վկայված է V դարից: (Հովհաննիսյան, 2010, 73):

*Մատռուակը* ՀԱԲ-ում ստուգաբանված չէ: Գ. Ջահուկյանը համարում է իրանական փոխառություն (Ջահուկյան, 1987, 533):

## 6. Գինու ամանի անվանումներ

Գրաբարում *աման* «անոթ, շտեմարան, մթերանոց» վկայված է V դարից: Բառարանները (ՀԱԲ, ՋՀՄԲ) նշում են այդ բառով մի շարք բաղադրություններ, սակայն գրաբարյան շրջանից վկայված են թերևս միայն *խնկաման* և *գինեման* «գինու աման» բառերը:

Գրաբարում մոտ տասնյակ բառեր *ջրի, հեղուկ նյութի* (հնարավոր է նաև գինու) անոթների անվանումներ են (տե՛ս Հովհաննիսյան, 2012, 48-61): Այդ կարգի բոլոր բառերին չենք անդրադառնա: Կբերենք միայն գրաբարի բառարաններում որպես «գինու աման» նշված, կամ համատեքստում այդպիսին գիտակցվող, որոշ դեպքերում նաև միջին հայերենից վկայված իմաստները:

***Ապակի***-ն ունի «շիշ, բաժակ» իմաստը. «Ապակի ի ձեռին, և արկեալ գինի» (ՆՀԲ):

***Առաստակ*** «գինու թաս, գավաթ» (ՀԱԲ, ՆՀԲ): Գրաբարում բառը հաճախական չէ: Թարգմանական գրականությունից վկայված է մեկ օրինակ:

***Բաժակ*** – Հաճախական կիրառություն ունի 5-րդ դարից: Փոխաբերաբար նշանակում է նաև «գինի» (ՆՀԲ, ՀԱԲ):

***Բղուղ*** «կարաս, մեղրի, յուղի, գինու աման» (ՆՀԲ): Վկայությունները միջինհայերենյան շրջանից են:

***Գաւաթ*** «բաժակ»: Գրաբարում հաճախական չէր:

***Գինեհան*** «կարասից գինին հանելու անոթ»: ՆՀԲ ունի մեկ վկայություն՝ Շիրակացուց:

***Գուբ***-ը գրաբարում ունի «հոր, ջրհոր, փոս» իմաստը: X-XI դդ. մատենագրության մեջ վկայված գուբ բառը գործածվել է թերևս այլ իմաստով:

Հ. Դրասխանակերտցին գրում է. «Լցան գուբքք գինւոյ ի կութս այգեստանեայց» (ՄՀ, հտ. ԺԱ, 481): Իսկ Լաստիվերտցին՝ «Ոչ լնուն կալք ցորենով և ոչ զեղուն գուբքք գինւով…» (ՄՀ, հտ. ԺՁ, 581):

Գինին փոսի, հորի մեջ լցնելը անտրամաբանական է: Հեղինակները, ըստ երևույթին, նկատի են ունեցել գինով լցված կավե ամանը՝ կարասը, որը թաղում էին փոսի մեջ: Այդ ավանդույթը այժմ էլ կա: ՆՀԲ-ում վերոհիշյալ վկայությունները արձանագրված չեն:

***Դղում*** «պտուղ դդմենւոյ, որ լինի աման գինւոյ» (ՆՀԲ): Օրինակները ուշ գրաբարյան և միջինհայերենյան շրջանից են: Միջին հայերենի բառարանում բառը արձանագրված չէ, կա *դդմակ* «երկայնաձև դդումից պատրաստված աման՝ ջրի կամ գինու համար: Դդմակ մի նռան գինի»:

***Ումպ*** արմատով մի շարք բաղադրություններ. *ըմպակ* «բաժակ», *ըմպանակ, ըմպարան* «բաժակ», *ըմպելի* «բաժակ», *ըմպիկ, ըմպելիքախառնոց* «գինու բաժակ»:

***Դորակ*** «ջրի, գինու ամաններ» նաև չափի միավոր. «Եւ նուէր ըստ չորրորդ դորակի գինւոյ… (Ելք, ԻԹ, 40):



***Թակոյկ*** «ջրի, գինու մեծ աման»: Հաճախական գործածություն ունի 5-րդ դարից: Վկայված է և Աստվածաշնչում. «Ուր կային թակոյկ և ըմպելիք» (Եսթեր, Ա. 7):

***Ժամանոց*** «գինու, ջրի սրվակ»: «Առ ժամանոցս զայս ի հեղուլ գինի» (ՆՀԲ): *Ժամանոցը* պատարագի արարողության վերաբերող հասկացություն է: Եթե բառարմատը՝ *ժամ*-ը դիտվում է որպես իրանական լեզուներից կատարված փոխառություն, ապա *ժամանոց*-ը պետք է համարել հայերեն բառ և ոչ թե փոխառություն:

***Խառնարան*** «թակոյկ, բաժակ»: «Եւ խառնեաց ի խառնելիս զգինի իւր և պատրաստեաց զսեղան իւր» (Առակ, Թ. 2): Բառը Աստվածաշնչի համաբարբառում չկա: Ըստ ՆՀԲ-ի՝ հունարեն համապատասխանակը κρατηρ-ն է՝ «1. Գինին խառնելու աման, 2. Գինու բաժակ» (Дворецкий, 979):

*Խառնարան*-ը հունարեն համապատասխանակի պատճենում-թարգմանություն է*:

***Խաւեակ*** «խեցեղեն փոքր աման, սափոր»: ՆՀԲ-ն և Արմ-ը նշում են նույն օրինակը՝ Ոսկեբերանից:

***Կահոյր***-ը մեկ անգամ վկայել է Բուզանդը՝ «կահոյր մի ջուր» (ՆՀԲ, ՀԱԲ): Բառարանները բացատրում են «ջրի աման, սափոր»:

***Կարաս*** – «Անօթ խոր և մեծափոր … ընդունարան քաղցուոյ և գինւոյ» (ՆՀԲ):

***Կթղայ/Կթխայ*** «թաս, բաժակ»: Վկայված է միջինհայերենյան շրջանից. «Սուրբ և անապակ գինի բերես, սափոր, կթղան ի վայր թափես» (ՄՀԲ, 372): Բառարանն ունի և *կթղայընկեր* «բաժակի ընկեր, բաժակակից»:

---

*Հույները գինին անխառն չէին խմում, այլ խառնում էին ջրի հետ: Կրատերը կավե այն անոթն էր, որի մեջ գինին խառնում էին ջրով: Սակայն Քսենոփոնի մոտ կրատերը նաև «գինու խոշոր կարաս» իմաստով է գործածված: (Տե՛ս Անաբասիս, 261), ծան. 23):

***Հաղաղակ*** «Զհաղաղակն գինւոյ և զսրուակն իւղոյ» (Յուդիթ, Ժ. 3): Գրաբարի բառարանները նշում են միայն այս օրինակը: Հունարենում բառի համապատասխանակը «կաշեղեն շիշ», որից ենթադրվում է կաշվից կամ փայտից պատրաստված գինու աման, տիկ: (Տե՛ս ՀԱԲ, III, 4):

***Ճաշակ*** «ըմպանակ, բաժակ»: «Զտուփս, և զճաշակս և զնուիրանոցս» (ՆՀԲ, II, 171):

***Մառան*** – Մթերքի, այդ թվում գինու շտեմարան: «Վաստակոց գրոց մեջ «մառանը» գինւոյ պահարան է միշտ» (Հացունի, 1912):

***Նուագ*** «բաժակ, գավաթ»: Վկայություններ կան 5-րդ դ. և՛ ինքնուրույն, և՛ թարգմանական գրականությունից: «Տարզալ ունել ոսկի և պատառաքաղ, և ոսկեղինօք ըմպել նուագօք» (Խոր., II, Խէ):

***Նուիրակ*** «բաժակ»: «Բուրուառքն խնկոցն ամանք և նուիրակքն գինւոյն» (ՆՀԲ):

***Նուիրանոց*** «բաժակ»: ՆՀԲ-ի վկայությունները հիմնականում թարգմանական գրականությունից են:

***Սակարան*** – ՆՀԲ-ում վկայված չէ: Աճառյանը այն համարում է «անորոշ նշանակութեամբ նորագիւտ բառ»: Ենթադրաբար արաբերեն sāqi «մատռվակ», որից sāqi-արան «տեղի մատռուակաց» (տե՛ս ՀԱԲ, IV, 159):

ՀԱԲ-ում նույն աղբյուրից կա երեք վկայության: Բերենք մեկ նախադասություն. «Ասէր ցմատռուակն, եթէ պակասիցէ ի սակարանիցդ և երթիցես ջրոյ»: Մյուս օրինակներն էլ այդ կարգի են: Հ. Աճառյանը ենթադրում է, որ «երևի նշանակում է «մատռուակների մառանը, պահարանները, բուֆետ»:

Պատմաբան Ս. Պետրոսյանը, մերժելով արաբերենից փոխառյալ լինելը, *սակ-* արմատի իմաստը առնչում է «գինի»-ի հետ՝ այն հիմնավորմամբ, որ «ըստ Քսենոփոնի այդ



նույն արմատով կազմված Σάκας անուն կրում էր Աստիագեսի մատռվակը: Հավանաբար, դա Սակասի ոչ բուն անունն է (անձնանունը), այլ պաշտոնի անվանումը:»: Հ.-ե. մի շարք լեզուներից բերելով համապատասխան բառեր՝ լատ. saccātum «վատորակ գինի», հին պրուս. sackis «բույսերի ու պտուղների հյութ», ռուս. сок... եզրակացնում է, որ *սակարան* նշանակում է «մառան, գինու պահեստ» (Պետրոսյան, 2006, 352-353):

***Սկահ*** «մեծ բաժակ, թաս», որից *սկահակ* «փոքր գավաթ» (ՀԱԲ): Բառի տարբերակն է *սկի*-ն:

***Տակառ*** «գինու կարաս»:

***Տաշտ*** «Անօթ ըմպելեաց՝ մեծ և փոքր» (ՆՀԲ): Կա և *տաշտակ:* Աստվածաշնչի «Եւ արասցէ պսակ սեղանոյն... եւ զտաշտն և զմսահանս...» (Ելք, ԻԷ, 3) նախադասության *տաշտ* բառի հունարեն համապատասխանակը φιάλα-ն է:

***Տիկ*** «Գինու, ջրի աման»: Առաջին վկայությունները Աստվածաշնչից են. «Ամենայն տիկ գինւով լցցի» (Երեմ., ԺԳ, 12): «Եւ ոչ արկանեն գինի նոր ի տիկս հինս. ապա թէ ոչ տիկքն պատառին եւ գինին հեղու» (Մտթ., Թ, 17):

***Քաս*** «հեղուկների չափ»: Ավանդված է նաև *փաս* ձևով: Վկայություններ կան Շիրակացու գործերում, Կաղանկատվացու «Պատմություն»-ում՝ «...Թուանիկն՝ չորս գրիւ ցորեան, վեց գրիւ գարի և վեշտասան փաս քաղցու» (Տե՛ս ՀԱԲ, IV, 557):

Վերոհիշյալ բառերը իմաստային ընդհանրություններ ունենալով՝ առանձնանում են գործածության հաճախականությամբ, վկայության ժամանակագրությամբ: Որոշ բառերի՝ *գավաթ, թաս,* արդի հայերենում «գինու բաժակ» իմաստը ակնհայտ է, իսկ գրաբարյան վկայություններում միայն ենթադրելի է:

Կարելի է առանձնացնել բնիկ և փոխառյալ բառերը:

Բնիկ հայերեն են *աման, տիկ* բառերը, նաև ումպ-(ըմպ) բաղադրիչով կազմված բաղադրությունները: ՀԱԲ-ում *ումպ*-ը ստուգաբանված չէ: Գ. Ջահուկյանը *ըմպել* համարում է հ.-ե. ծագում ունեցող բառ (Ջահուկյան, 1987, 144): Բնիկ հայերեն պետք է համարել *գինեման, գինեհան* բառերը, որոնց երկու բաղադրիչներն էլ հ.-ե. ծագում ունեն: Փոխառյալ բառերի շարքում մեծ թիվ են կազմում միջին իրանական լեզուներից անցած բառերը. ապակի, բաժակ, բղուղ, դորակ, թակույկ, կուժ, նուագ, նուիրակ, տակառ, տաշտ, քաս:

Սեմական լեզուներից՝ գուբ, թաս, կթղայ, մառան, սկահ…

Մնացած բառերի ծագումը ստույգ չէ:

Հնագիտական պեղումները ուշագրավ տեղեկություններ են հաղորդում մի շարք իրերի ձևի, հնության, գործածության առանձնահատկությունների մասին:

Հնագույն ժամանակաշրջան ենթադրող անոթներից են կարասները (մ.թ. ա. XXI-XIX դդ.), փարչերը (մ.թ. ա. XXIX-XXVII դդ.), սափորները (մ.թ. ա. XVI-XV դդ.), խառնարանները (մ.թ. ա. VII-VI դդ.): Ապակե սափորները և բաժակները՝ (IX-XI դդ.)[*]:

*Կարասների* մասին հիշատակում է դեռևս Հերոդոտոսը: Նկարագրելով Արմենիայում պատրաստվող նավերը՝ գրում է, որ նրանք մեծ մասամբ փոխադրում են *գինի՝ կարմիր կարասներով* (Հերոդոտոս, I, 80): Թարգմանիչը ծանոթագրում է, որ հայ և օտար թարգմանիչները ընդգրկված հատվածը թարգմանել են «գինով լեցուն արմավենու տակառներ», որ սխալ թարգմանություն է. հուն. φοινικηιουσ

[*] Տե՛ս Մ.Հարությունյան, Ա.Քալանթարյան, Հ.Պետրոսյան, Գ.Սարգսյան, Հ.Մելքոնյան, Ս.Հոբոսյան, Պ.Ավետիսյան, *Գինին հայոց ավանդական մշակույթում*, Ե., 2005 թ., էջ 43, 57, 60…:



համատեքստում նշանակում է ոչ թե «արմավենուց», այլ՝ «կարմիր» (Ծան., 151, 586):

***Հնձան*** - «խաղող ճմլելու ավազան»: Առաջին վկայությունը V դարից է: Գրվում է և *հնծան:* «Ի ժողովել քեզ ի կալոյ քումմէ և ի հնձանէ քումմէ» (Երկր. Օր., ԶԺ, 13): *Հնձան* բաղադրիչով են կազմված մի շարք բառեր. *Հնձանակ* «փոքր հնձան», ***հնձանահար*** «հնձանում խաղող ճմլող», ***հնձանահարութիւն, հնձանայարկ*** «հնձանի տեղ», ***հնձանաշէն*** «որպես հնձան պատրաստված»: Բառակապակցություններ՝ *գուբ հնձան, հնձան հարկանել, հնձան կոխել…:*

*Հնձան-ը* ստուգաբանված չէ: ՆՀԲ-ն առաջին բաղադրիչը համարում է *հունձ* բառը: Հ. Աճառյանը չի ընդունում այդ կապը. «ճզմելու» և «հնձելու» գաղափարները ինչպէս կարող են կապուել իրար հետ. Գուցե *հնձան* նախապէս ուրիշ նշանակութիւն ունէր» (ՀԱԲ, III, 105):

Գ. Ջահուկյանը ենթադրում է որպես խեթերն բառ. GIS hanza(n) «մի տեսակ սարք, աման» (Ջահուկյան, 1987, 314): Իսկ մի այլ աշխատության մեջ հնարավոր է համարում կապը *հունձ* «բերք»-ի հետ (ՋՀՍԲ, 464): Կարծում ենք՝ *հունձ,* հնձել-ի հետ կապը մերժելի չէ: Մանավանդ որ ՆՀԲ *հնձեմ* բառահոդվածում բացի «հնձել» (քաղել ցորենը, խոտը) իմաստից նշում է նաև «ջարդել», «կոտորել» իմաստները: ՀԱԲ-ում բառը ստուգաբանված չէ: Գ. Ջահուկյանը հավանական է համարում հ.-ե. ծագումը՝ *onkos՝ *enek «հասնել» արմատից (ՋՀՍԲ, 468)[*]:

[*] *Հնձան*-ի տեղի, դիրքի և կառուցվածքի մասին տե՛ս «Գիրք Վաստակոց», էջ 87: Այս գրքում կա *հնձան*-ի հոմանիշ *սիլայ* բառը (էջ 87): Հ. Աճառյանը այն համարում է նորագյուտ բառ: Բառը ՀԱԲ-ում բացատրվում է «խաղող կոխելոյ հնձան», իսկ «Գիրք Վաստակոցի» հրատարակիչը ծանոթագրում է. «հնձան կամ ընդունարան,, որում խաղող կոխեն» (259): Կարծում ենք, *սիլայ*-ն հնձանի ինչ-որ մաս է:

***Մառան*** - «Ներքին և մթին սենեակ ամբարելոյ զպետս խոհարանի. Մթերանոց ուտելեաց և ըմպելոց» (ՆՀԲ)։ Ըստ ՀԱԲ-ի «շտեմարան (զինու, կերակրեղէնի և այլ մթերքների)»։ Է. Աղայանի բացատրական բառարանում զանազան մթերքների պահոց բացատրությունից հետո նշվում է «մասնավորապես զինին պահելու նկուղ» (970)։ Հ. Աճառյանը ենթադրաբար համարում է ասորական փոխառություն. ասոր. madāna «շտեմարան, մառան»։ Գ. Ջահուկյանը անվերապահորեն ընդունում է այդ ստուգաբանությունը։ Ասորերենի և հայերենի իմաստային ընդհանրությունը ակնհայտ էր սակայն, առկա է հնչյունափոխության, (մեր կարծիքով լուրջ) անհամապատասխանություն։ *Մառան*-ը վկայված է 5-րդ դարի մատենագրության մեջ, և անշուշտ, այն գործառել է ավելի վաղ շրջանից։ Գրաբարի փոխառյալ բառերում միջձայնավորային d(ϑ)-ն հայերենում տառադարձվում է ոչ թե ռ-ով, այլ՝ ր-ով։ Համտ. պրթ. wyd'n – հայ. *ապարանք* և այլն*։

Հ. Հմայակյանը *մառան* համարում է խեթահայկական զուգահեռ. խեթ. marnuwa «խմիչքի տեսակ» (Հմայակյան, 2016, 162)։

---

Բնագրի ավելի ամբողջական օրինակը. «Եւ հնձանին մեկ դեհին փոքրագոյն հնձան պիտի ... *եւ թէ զսիլայն ոք ի ներքս ի մառանն առնու*, լան այն է։ Եւ թե զխողովակն դնես, որ քաղցուն... ի կարասն լնանի... (87)։

* Հ. Հյուբշմանը մերժում է Մարկվարտի *Բագայառիճ* բառի *Bagayāda ստուգաբանությունը՝ իրավացիորեն նշելով, որ հայերենում այն պետք է լիներ Բագայար (ր-ով և ոչ թե ռ-ով) (Հյուբշման, 1907, 319)։



# ԱՄՓՈՓՈՒՄ

Սույն աշխատանքում քննված է խաղողագործության իմաստային դաշտին վերաբերող 40 բառ (տերմին)։ Դրանք հիմնականում բնիկ հայերեն՝ հնդեվրոպական ծագումով բառերն են։ Կան նաև այլ լեզուներից կատարված փոխառություններ։ Մանրամասն քննված են այդ բառերի գործառական, բառակազմական առանձնահատկությունները։ Նկատված է, որ *խաղող* բառը գրաբարում հաճախական չէր։ Սակավաթիվ են նաև այդ բառով կազմությունները։ Հայերենում ծառատեսակների անվանումներին բնորոշ է *բուսանուն+ի(ենի)* –ածանցը։ Գրաբարում *խաղողենի* ավանդված չէ։

*Խաղող* բառի նվազ հաճախականության պատճառը այն է, որ այդ հասկացությունը արտահայտվում է մի շարք այլ բառերով՝ գինի, որթ, այգի...։ Նկատելի է գրաբարում *խաղողի վազ* և դրա մասերի անվանումների բազմազանությունը (հոմանիշությունը)։ Հոմանիշային այդ շարքերում առկա են ինչպես բնիկ հայերեն, այդպես էլ փոխառյալ բառեր։ Թերևս դրանք հայերենում գործառել են տարբեր ժամանակաշրջաններում կամ էլ եղել են տարբեր տարածքային (բարբառային) միավորներ։

Ոգելից խմիչքների անվանումներ են *գինի, օղի, գքի:*

Մատենագրական տվյալները հաստատում են, որ Հայաստանում ոգելից խմիչքներից օգտագործել են միայն գինին։ Այդ բառով կան բազմաթիվ կազմություններ, այդ թվում հատկանուններ։ Մատենագրության մեջ կան նաև գինու տեսակների անվանումներ։

*Ցքի*-ն վկայված է թարգմանական գրականության մեջ: Բառը հունարեն σικερα-ի թարգմանություն-տառադարձություն է: Հունարեն բառն էլ եբրայական փոխառություն է:

*Գարեջուր* վկայված է հետգրաբարյան շրջանից: Կա հոմանիշ *կասկաջուր* բառը, որի առաջին բաղադրիչն է պրս. kask «գարի»: Բնագրային օրինակներից ենթադրելի է, որ դրանք հիմնականում ըմպելիք էին կամ գարուց պատրաստված հյութ: Որպես խմիչք թերևս միայն Քսենոփոնի «գարուց պատրաստված գինի» և Ամիրդովլաթի «գարու գինի» վկայություններն են:

Մատենագրության մեջ տեղեկություններ կան նաև գինըմպության վերաբերյալ: Պախարակվում է հարբեցողությունը, դրվատելի համարում գինու չափավոր օգտագործումը: *Հարբել* հասկացությունը բացի *արբենալ* բառից արտահայտվում է նաև *գինի* բաղադրիչով մի շարք դարձվածքներում: Ինչպես՝ «ընդ գինիս մտանել», «գինին գալ զակամբ», «զայրանալ ի գինւոյ» և այլն: Այս կարգի օրինակները լեզվամտածողության, ժողովրդախոսակցական լեզվի յուրահատկությունների արժեքավոր տվյալներ են:



## ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑԱՆԿ


1. **Ագաթանգեղայ,** Պատմութիւն հայոց, Տփղիս, 1909, Երևան, 1983:
2. **Ալիշան Ղ.,** Հայբուսակ կամ հայկական բուսաբառութիւն, Վենետիկ, 1895:
3. **Աղայան Է.,** Բառաքննական և ստուգաբանական հետազոտություններ, Երևան, 1974:
4. **Աղայան Է.,** Արդի հայերենի բացատրական բառարան, Երևան, 1976:
5. **Աճառեան Հ.,** Հայերէն գաւառական բառարան, Թիֆլիս, 1913:
6. **Աճառյան Հ.,** Հայոց լեզվի պատմություն, I մաս, Երևան, 1940, II մաս, Երևան, 1951:
7. **Աճառյան Հ.,** Հայերեն արմատական բառարան, հ. Ա-Դ, Երևան, 1971-1979:
8. **Աճառյան Հ.,** Հայոց անձնանունների բառարան, հ. 1-5, Երևան, 1942-1962:
9. **Ամիրդովլաթ Ամասիացւոյ** Անգիտաց անպէտ կամ բժշկական նիւթոց, Վիեննա, 1927:
10. **Առաքել վարդապետի,** Դաւրիժեցւոյ Պատմութիւն, Վաղարշապատ, 1884:
11. Առձեռն բառարան հայկազնեան լեզուի, Վենետիկ, 1865:
12. Աստուածաշունչ մատեան Հին և Նոր կտակարանց, Վիեննա, 1929:
13. **Բարսեղ Կեսարացի,** Յաղագս վեցաւրեայ արարչութեան, աշխատասիրությամբ Կիմ Մուրադյանի, Երևան, 1984:
14. **Բիւզանդացի Ն.,** Հայկական բառաքննութիւն, Կոստանդնուպօլիս, 1880:

15. **Բիւզանդացի Ն.**, Քննադատութիւն Հայքուսակի, Վիեննա, 1925:
16. **Գաբիկեան Կ.**, Հայ բնաշխարհ, Երուսաղեմ, 1968:
17. Գիրք վաստակոց, Վենետիկ, 1877:
18. **Դաւիթ Անյաղթ**, Մեկնութիւն «Ստորոգութեանցն» Արիստոտելի, Երևան, 1980:
19. **Եզնըկայ վարդապետի Կողբացւոյ**, Եղծ աղանդոց, Երևան, 1994:
20. Եղիշէի Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին, Երեւան, 1957:
21. Եւագրի Պոնտացւոյ Վարք և մատենագրութիւնք, Վենետիկ, 1907:
22. **Իշօխ**, Գիրք ի վերայ բնութեան, աշխատասիրությամբ Ս. Վարդանյանի, Երևան, 1979:
23. **Կորիւն**, Վարք Մաշտոցի, Երևան, 1941:
24. **Հակոբյան Թ.**, **Մելիք-Բախշյան Ստ.**, **Բարսեղյան Հ.**, Հայաստանի և հարակից շրջանների տեղանունների բառարան, h. 1-5, Երևան, 1986-2001:
25. Համաբարբառ Հին և Նոր կտակարանաց, Երուսաէմ, 2010:
26. Հայկական համաբարբառ, Երևան, 1972-1975:
27. **Հարությունյան Ա.**, **Քալանթարյան Ա.**, **Պետրոսյան Հ.**, **Սարգսյան Գ.**, **Մելիքյան Հ.**, **Հոբոսյան Ս.**, **Ավետիսյան Պ.**, Գինին հայոց ավանդական մշակույթում, Երևան, 2005:
28. **Հացունի Հ.**, Ճաշեր և խնճոյք Հին Հայաստանի մէջ, Վիեննա, 1912:
29. **Հերոդոտոս**, Պատմություն ինը գրքից, թարգմանությունը Սիմոն Կրկյաշարյանի, Երևան, 1986:
30. **Հմայակյան Հ.**, Գրիգոր Ղափանցյանը և խեթագիտությունը, Երևան, 2016:



31. **Հյուբշման Հ.**, Հին հայոց տեղւոյ անունները, Վիեննա, 1907:
32. **Հովհաննիսյան Լ.**, Գրաբարի բառապաշարի իմաստային խմբերի քննություն, I մաս, Երևան, 2008, II մաս, Երևան, 2012:
33. **Հովհաննիսյան Լ.**, Բառերի մեկնությունները հինգերորդ դարի հայ մատենագրության մեջ, Երևան, 2016:
34. **Ղազարայ Փարպեցւոյ** Պատմութիւն Հայոց, Երևան, 1982:
35. **Ղազարյան Ռ.**, **Ավետիսյան Հ.**, Միջին հայերենի բառարան, Երևան, 2009:
36. **Ղափանցյան Գ.**, Հայոց լեզվի պատմություն, հին շրջան, Երևան, 1961:
37. **Ղափանցյան Գ.**, Անտիպ գործեր, Երևան, 2008:
38. **Մալխասեանց Ստ.**, Հայերէն բացատրական բառարան, h. 1-4, Երևան, 2010:
39. Մատենագիրք հայոց, h. 1-2, Անթիլիաս-Լիբանան, 2003:
40. **Մեյե Ա.**, Հայագիտական հետազոտություններ, Երևան, 1978:
41. **Մելիք-Շահնազարեանց Կ.**, Ուղեցոյց գործնական գինեգործութեան, Տփխիս, 1885:
42. **Մովսես Խորենացի**, Պատմութիւն Հայոց, Երևան, 1991:
43. Նոր բառգիրք հայկազեան լեզուի, h. 1-2, Վենետիկ, 1836-1837:
44. **Ոսկեբերան Յ.**, Յովհաննու Ոսկեբերանի յաւետարանագիրն Մատթէոս, Վենետիկ, 1826:
45. Ոսկեբերանի մեկնութիւն թղթոցն Պաւղոսի, Վիեննա, 1862:
46. **Պետրոսյան Ս.**, Դասերը և եռադասության դրսևորումները Հին Հայաստանում, Երևան, 2006:

47. Պետրոսյան Ս., Գնունի նախարարական տոհմի և զինու պաշտամունքի շուրջ (ՊԲՀ, N 2-3, 1999 թ., էջ 175-189):
48. **Ջահուկյան Գ.**, Հայերենը և հնդեվրոպական հին լեզուները, Երևան, 1970:
49. **Ջահուկյան Գ.**, Հայ բարբառագիտության ներածություն, Երևան, 1972:
50. **Ջահուկյան Գ.**, Հայոց լեզվի պատմություն. Նախագրային ժամանակաշրջան, Երևան, 1987:
51. **Ջահուկյան Գ.**, Հայերեն ստուգաբանական բառարան, Երևան, 2010:
52. **Սարգսյան Ա.**, Ղարաբաղի բարբառի բառարան, Երևան, 2013:
53. **Սարգսյան Գ.**, Պատմագիտական հետազոտություններ, Երևան, 2006:
54. **Ստրաբոն**, Քաղեց և թարգմանեց Հ. Աճառյան, Երևան, 1940:
55. Վարք Սրբոյ հարանց, Վենետիկ, 1855:
56. **Քսենոփոն**, Անաբասիս, Երևան, 1970:
57. Փաւստոսի Բիւզանդացւոյ Պատմութիւն Հայոց, Ս. Պետերբուրգ, 1883, Երևան, 1987:
58. **Библия**, Книги священного писания Ветхого и Нового завета, Москва, 1994.
59. **Гамкрелидзе Г., Иванов Вяч.**, Индоевропейский язык и индоевропейцы, т. II, Тбилиси, 1984.
60. **Георгиев В.**, Исследования по сравнительно-историческому языкознанию, Москва, 1958.
61. **Дворецкий И.**, Древногреческо-русский словарь, т. 1-2, Москва, 1958.
62. **Джаукян Г.**, Очерки по истории дописьменного периода армянского языка, Ереван, 1967.



63. **Джаукян Г.**, Взаимоотношение индоевропейских, хуррит-ско-урартских и кавказских языков, Ереван, 1967.
64. Зороастрийские тексты, Москва, 1997.
65. **Капанцян Г.**, Историко-лингвистические работы, Ереван, 1975.
66. Симфония к синодальному изданию Библии,Москва, 1995.
67. Septuaginta, Stuttgart, 1979.
68. The Greek New Testament, Stuttgart, 1994.

# ՀԱՄԱՌՈՏԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Գրքերի, հանդեսների անվանումներ

ԱԲ – Առձեռն բառարան հայկազնեան լեզուի
Ագաթ. – Ագաթանգեղայ Պատմութիւն
Աճ. Ստրաբ. – Աճառյան Հ., Ստրաբոն
Անգ. Անպ. - Ամիրդովլաթ Ամասիացւոյ, Անգիտաց անպէտ
Անձ. բառ. - Աճառյան Հ., Հայոց անձնանունների բառարան
Բիւզ. Քնն. – Բիւզանդացի Ն., Քննադատութիւն Հայբուսակի
Բրսղ. վեց. – Բարսեղ կեսարացի, Յաղագս վեցաւրեայ արարչութեան
Բուզ. – Փաւստոսի Բիւզանդացւոյ Պատմութիւն Հայոց
Եզն. - Եզնըկայ Կողբացւոյ, Եղծ աղանդոց
Եւագր. - Եւագրի Պոնտացւոյ Վարք և մատենագրութիւնք
Խոր. - Մովսէս Խորենացի, Պատմութիւն Հայոց
Կոր. - Կորիւն, Վարք Մաշտոցի
ՀԱԲ - Աճառյան Հ., Հայերեն արմատական բառարան
ՀԼԲԲ – Հայոց լեզվի բարբառային բառարան
ՀԼՊ – Հայոց լեզվի պատմություն
ՀՀՇՏԲ – Հայաստանի և հարակից շրջանների տեղանունների բառարան
ՂԲԲ - Սարգսյան Ա., Ղարաբաղի բարբառի բառարան
ՄՀ – Մատենագիրք Հայոց
ՄՀԲ - Ղազարյան Ռ., Ավետիսյան Հ., Միջին հայերենի բառարան
ՆՀԲ - Նոր բառգիրք հայկազեան լեզուի
Շհնզ. - Մելիք-Շահնազարեանց Կ., Ուղեցոյց գործնական զինեգործութեան
ՇՀՀԿԳԱ – Շիրակի հայագիտական հետազոտությունների կենտրոն. գիտական աշխատություններ



ՊԲՀ Պատմաբանասիրական հանդես
ՋՀՍԲ - Ջահուկյան Գ., Հայերեն ստուգաբանական բառարան
Սգր. – Սուրբ գիրք*
Վաստ – Գիրք վաստակոց
Փարպ. - Ղազար Փարպեցի, Պատմութիւն Հայոց
Зораст. - Зороастрийские тексты

2. Լեզուների անվանումներ

ակկադ. – ակկադերեն
անգլ. – անգլերեն
ասոր. – ասորերեն
եբր. – եբրայերեն
իտալ. –իտալերեն
լատ. - լատիներեն
լիտ. - լիտվերեն
խեթ. – խեթերեն
հայ. – հայերեն
հ.-ե. – հնդեվրոպական
հին պրուս. – հին պրուսերեն
հին վ. գ. – հին վերին գերմաներեն
հուն. – հունարեն
մ. պրս. – միջին պարսկերեն
պհլ. – պահլավերեն
պրթ. – պարթևերեն
ռուս. – ռուսերեն
վրաց. – վրացերեն
ուրարտ. – ուրարտերեն
ֆրանս. - ֆրանսերեն

---

* Աստվածաշնչի համառոտագրությունները՝ ըստ ընդունված կարգի:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





ԼԱՎՐԵՆՏԻ ՇԱՀԵՆԻ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# ԳՐԱԲԱՐԻ ԲԱՌԱՊԱՇԱՐԻ ԻՄԱՍՏԱՅԻՆ ԽՄԲԵՐԻ ՔՆՆՈՒԹՅՈՒՆ
## (III մաս)
## ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ-ԳԻՆԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

Կազմի ձևավորումը՝ Ա.Մուրադյանի

Հրատ. պատվեր № 856
Ստորագրված է տպագրության՝ 13.04.2018թ.:
Չափսը՝ 60 x 84 1/16, թուղթը՝ N 1, 4,25 տպագր. մամուլ:
Տպաքանակը՝ 120 օրինակ:
Գինը՝ պայմանագրային:

ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատարակչության տպարան,
Երևան, Մարշալ Բաղրամյան պող. 24: